**21Ը** չչարանամ ու չաղճատվեմ
ու տե՛ր կանգնեմ իմ «ես»-երին
և միանամ, միավորվեմ
ու Մե՛կ լինեմ:

***

Էս ճանապարհը, որ ես անցա,
պետի նման վայելեցի՛.
ցնորքիս բորբոք ջահը վառած
ու ինքնակիզմամբ... ո՜րբ քայլեցի:
Արարեցի, ա՜խ, միշտ երկյուղած,
արբեցի միակ խոսքով վսեմ,
և մահը նույնիսկ չնչին թվաց
բանաստեղծմանս մուլուցքի դեմ:
Եվ մնացյալը՝ կինն ու գինին
ու ամենն անուշ միատեղած՝
համեմատ չէին այդ տքնանքիս
միածին բառին հստակ պեղած:
Մաքրության նման սարսուռ ապրում
երևի Նոյն է լոկ զգացել,
երբ աղավնին էր ծիլը բերում-
զույգ կապույտներով թևել-անցե՛լ:
Եվ եղա թևև ես անընտել՝
վեհասլաց ու վիհամոլոր,
ցամաք բիբերս մուրում են դեռ
տեսլականում այլ սեր ու կարոտ:
Ինչևէ, հիրը չեմ փորփրում.
իմ ճանապարհի հոծ կամարին
գուցեև չկա՛ր այն օրերում
կանաչ-կարմիրը արևային:
Ով ընկրկել է՝ չեմ մեղադրում
ընկերներիս այն (արու՞- մարի՜),
Աստծուց ամեն օր գութ եմ խնդրում՝
նրանք ամենն են հիմա... այրի:

## «ԹԱՎՇՅԱ ԱՇՈՒՆ» 2013-2014 թթ.

***

Անունդ մանանայի քաղցրությամբ
հալվում է քիմքիս:
Գեղեցիկիդ խելքով եմ հմայված,
թեև, ինչ խոսք,
սիրունն ավելի է սիրելի:
Մեր ամեն մի հանդիպմամբ արբա՜ծ՝
ճախրում եմ պաղ նոյեմբերյան
նրբանցքներից վերև ու անտեսանելի
սավառնող ամպերի ժանյակներում:
Բայց ծածկագրել եմ քեզ
հնարավոր բոլոր գաղտնաբառերով,
որ իմ վաղեմի ախոյան սատանան
քեզ հանկարծ չճանաչի
(ախր հզոր է անիծյալը),
ու այս անուրջե թեթևասահ ճախրանքս
կրկին չխճճվի
ինձ լավ ծանոթ
տառապանքի դառնաղի սարդոստայնում:
Ու... կներե՜ս,
նույնիսկ քեզ չեմ ցույց տալիս
ներսումս կոհակվող
լուռսազարդ ծաղկած լճակն այս:
Թեև, ինչ խոսք,
եթե ցանկանաս՝
կարող ես դեպի այն տանող
թաց կածանը կռահել
տամուկ աչքերիս մեջ:

***

Օ՜, Նաիրուհի՛ս՝
կծղուն արևածաղկի պես
խոնարհ ու ծանրաբեռն...
Կարծես հովն էր գրկել
մարմինդ սլացիկ
և օրորում էր դողդոջ:
Անապական շունչդ
եղնիկի հևք էր ասես՝
արյամբ հարազատ ու ջերմ
(մի՞թե մտերիմ չենք եղել
մենք դպրոցական նստարանից...),
և քնքշությունը մեջքիդ
ափիս կոշտության մեջ
ելևէջվեց որպես անմեկնելի հնչյուն
այգաբացյան սաղմոսներից:
Դու ես, հասկացա՜,
Դավիթի աչքերին հոգնած
Սիոնի այգիների զմրուխտը պարզել:
Դու ես Ոդիսևսի համար
վերադարձի ճանապարհ բացել
ծովերի գոռ ալիքների միջով,
և Դու ես՝ քո վեհերոտ նազանքով
մեր Արային Գեղեցկագույնը դարձրել
հին ու նոր բոլոր այրերից
հավլունի արքայապատիվ կարծրությամբ.
– Իմ Նուարդին չեմ դավաճանի:

***

Քո ջերմ գարունն այս
իմ թավշյա աշունն է.
մայիսյան վարդերիդ խելացնոր բուրմունքը
արևահամն է իմ ոսկեհատ խաղողի,
գինեծոներիս եռքը քաղցրափրփուր:
Անծրևներիդ մաքրությամբ շնչող
ակնախտիղ համատարած զմրուխտդ
իմ արտերի գլխահակ ցորյանն է
ու բաղձանքից շիկնած այգիներիս
կարմրաթուշ բարիքն անհատնում...
Անապական երկնքումդ լուծվող
թեթևասահ երազանքիդ ծիրը
իմ խելառ ասքի հաստարմատ ջիղն է՝
գրանիտ քարափը ճեղքած բռնչենուս
բնից խոխոջող աղբյուրիս զրնգոցով:
Եվ ծիծեռները քո շինարար
իրենց թևիկներին
մի՞ թե իմ աշնանային մշուշներից
իրիկնային մամռահոտ հեքիաթներ չեն բերել
գարնանային զվարթ երկիրը քո,
որ Յարության հրաշքը կերտեն
այգաբացներիդ թաց սարսուռներում...

***

Խոսի՜ր, մի՛ լռիր,
խոսի՜ր, որ թռչուններ դարձած
բանաստեղծություններիս չուն
չմոլորվի գիշերվա մթին,
օրը ցերեկով... մանկամտաբար
հանկարծ հմայված
այլ հորիզոնների դյութանքներով շքեղ
ու անվերապահ միշտ վերադառնա
ծաղկուն օազիսներիդ լճակները անրջածին:

Խոսի՜ր, մի՛ լռիր,
խոսի՜ր, որ աչքերս բացվեն.
կամա-ակամա, ուզես թե չուզես՝
դու՜ ես իմ աչքերի լույսը հանապազ,
իմ սրտին ցայվող շաղն ես բերկրանքի...
փողոցների փոշուց շնչահեղձված
ռունգերս շոյող՝
սարերից սահած շնկշնկան բույրն ես
ու գիտե՞ս՝ նույնիսկ
առաձիգ ողն ես չընկճվող կամքիս:

Խոսի՜ր, մի՛ լռիր,
խոսի՜ր, որ այլևս լինեմ
մունետիկը քո բոսոր սրտի,
թարգմանը դառնամ քո մտքերի
և արձագանքը քո երազների,
քո արյան տաք խանդաղատանքը լինեմ
ու թանձր կենսահյութը քո ավիշի:

## «ՉՀՐԿԻԶՎԱԾ ՎԱՐԴԵՐ», 1996 թ.

Խոսուն պատում է դարձել գիշերը՝
աշխույժ աղմուկով մահապարտների,
օբյեկտի տիրոջ կողմից մի շի՜շ էլ ...
– Սրնգահարիդ մի՛ դատապարտիր:
Փործված տղերքն են ու չե՜ն նահանջել,
վառվում է արդեն անհագ կարմիրը,
քամու շառաչին ծգվու՜մ ենք առաջ...
– Անդարձ ցնդել է ցնորքն անմարմին:

Սրտիս է հասել արդեն հարամին,
խավարին չանսաս, չեմ կորի անհետ,
Վառվում է արդեն դաժան կարմիրը...
– Զանգահարիդ տու՛ր հույսի արահետ:

***

Ինձ երազված հերոսները անիրական
ցնորամիտ գրքերի մեջ են սոսկ եղել,
և այս կյանքում նրանց նման ե՛ս էլ չկամ՝
շարքերի մեջ այս մեղսածին ու հողեղեն:
Ու թե բան է՝ դյութված կյանքի պերճանքներով
անիրական իմ այս գոյից ցած եմ սահել,
ու փորձել եմ ոմանց նման ապրել օրով,
ոմանց նման և՛ պայքարել, և՛ վայելել,
ապա ինչ-որ աներևույթ հսկա մի ուժ
ինձ՝ իմ փոքրիկ պահանջներով՝ դուրս է վանել
կրկին դեպի այնկողմնային ափը մուժի
կրկին դեպի գոյությունն իմ թույլ ու անել:
...Արդ՝ քանի՜սը իմ վրայով անցան թեթև,
տրորվեցի քանի՜ անգութ ոտքերի տակ,
ու երբ հիմա ինձ եմ նայում, թվում է, թե
շնչավո՛ր չեմ ցավամրմուռ, այլ մո՛ւնջ դիակ:
Եվ այդքանից՝ այս դառերից հետո անհուշ,
դեռ ո՜խ չունեմ, մարդուն հատուկ քենը չկա
ու մոլորված կասկածում եմ՝ թե՞ անմռունչ
լոկ Իմաստ եմ անիրական ու հա՜ Չկամ...
*17.18.2002 թ., Վանաձոր*

***

Աստծո ամեն օրը՝ ճամփաբաժան.
մարդ հոգնել է արդեն այս շփոթից,
մեր մարդեղեն կերպից այսքան էժան.
խեղճությունից շիկնող մեր ամոթից:
Ու գնում ենք որքան, դոփում առաջ,
ավելի ենք շաղվում, մաղվում-դաղվում.
– Պատանության պայծառ բիբերիս մեջ
Մի՞թե այս պատկերն էր աղավաղուն:
Մի՞թե այս երկիրն էր ցնորքազերծ,
ուր որդերի պես հար չարաճճի
գալարվում ենք հույսով՝ հին աղբի մեջ,
որ Տիեզերքն – ինքը մեր դեմ կաճի:
*18.10.2002 թ., Վանաձոր*

Մենությունս երբեք իմը չեղավ
ո՛չ արևոտ օրով, ո՛չ ամպամած,
օտար և կեղծ մարդիկ այն կիսեցին
անիրավունք մտան երկիրս բաց:
Ո՛չ բարեկամ-ծանոթ, ո՛չ մտերիմ,
ո՛չ հարազատ արյամբ, ո՛չ սեր քնքուշ
իմ տաճարով չանցան հուշիկ ու հեզ,
ավերակներ թողին ինձ որպես հուշ:
Ո՜նց չսսկվեր երգս այն ժանտ հոտից,
որ նրանցից կաթած թույնն էր ծորում,
ախր քանի՜ բուժեմ խփված հոգիս,
քանի անգամ փակվեմ ես խոր ձորում:
Կամ գազազած նախրի քառատրոփից՝
էժանագին ինչքի հետևն ընկած,
ես քանի՜ցս փախչեմ լեռները ցուրտ,
քարափներում սառչեմ ահաբեկված:
Որ չպղծվի հանկարծ նրանց շնչից
մութ դարերի միջով մեզ ժառանգված
մեր կեցության իմաստն ստեղծագործ,
մեր գոյության ձևը հաղթանակած:
Որ անպատիվ ու հեզ, լուռ չկանգնեմ
խաչյալների առջև բոլոր նախկին,
չհաջողվի իմ մոտ՝ էլ չծաղկեմ,
գեթ փոխանցեմ մյուս ժամանակին:
Իսկ պղծելուս համար՝ առատագին,
միշտ աննշան երանգ պակաս մնաց
իմ հայրենի երկրում՝ վտարանդի,
իմ մայրենի լեզվով՝ չթարգմանված:

*Աշոտ ՄԻՐՋՈՅԱՆ*

## Քրիստոնեադավան աշխարհին

*(Հայաստանում քրիստոնեության ճանաչման 1700-ամյակի առիթով նվիրում եմ թուրքական յաթաղանի սարսափներն ապրած էրզրումցի հորս հիշատակին)*

Իմ նախնյաց օրրան,
Հայոց բնօրրան,
Էրգի՛ր Հայաստան...
Դու քրիստոնյա
Հայի օրորան:
Սկիզբդ դարերում՝
Դարերով անցար,
Դու կաս դարերում:
Եվ ինչպես հավերժի
Երթն է հարահոս,
Կապրի ազգն հայոց
Եվ բառն հայախոս:
Իսկ քո արյունոտ,
Հորս արցունքոտ
Հուշերի վկան,
Որին անվանում ենք
Եղեռնի տարի՝
1915 թվական,
Հանց անեծքի
Բառերի շարան,
Մարմնին դաջվող
Ամոթի խարան
Կապրի դարերում
Որպես անմեղ ապարտի
Դարերում չլռող մեղադրանք.
Աշխարհին այս անարձագանք՝
«Ձայն բարբառո հանապատի»
Բայց չէ՞ որ ազգն իմ
(Որ նման չէր մեղապարտի)՝
Դարաբույր հետնորդը
Հայոս էթնոսի,
Լուսավորիչ ծնող
Օրրանը լույսի,
Առաջին օրինական
Հետնորդն էր Հիսուսի:
Եվ քրիստոնեադավան
Աշխարհի աչքերի առջև
(Կարոտ օգնության հույսի)
Անօրենը խաչում էր՝
Ի հեճուկս Քրիստոսի:
Հեռո՛ւ դուք, մտե՛ք,
Ո՞ւր եք տանում ինձ,
Հոգիս պղտորում
Նորից ու նորից,
Երբ ոչխարահունչ
«Ազ», «Կարա-կոյունլու»
Ցեղերից սերված,
Յաթաղան կոչված
Սրից անբաժան
Թուրքի մի խուժան
Անհոգ նախատակում էր
Արարող, կերտող
Բարին ծնող հունդ՝
Մի հին ժողովուրդ:
Եվ դարին՝ անարգանք,
Ոճիրն այդ՝ հանցանք,
Որի համար պահանջում ենք
Միայն արդար դատ,
Նորից շղթայել է
Նույն թուրքը ժանտ...
Ջինանի՛շ էլ ընտրել՝
Մաքո՛ւր, անաղա՛րտ,
Նույնիսկ ցերեկների
Պագշոտ աչքերի
Հայացքից փախչող.
Մինչդեռ գիշերներին՝
Երկնքին թիկնած,
Կորված մարմինը
Անամոթի պես բաց,
Հանց հարեմների
Տարփանքին սովոր,
Հեշտագին տրվող
Ժպիտով կանչող
Բոզ կիսալուսին ...
Մի կողմից էլ
Կարծես թե փնտրել,
Ճշգրիտ ու ճիշտ,
Թուրքին ներհատուկ,
Ջինանիշ են ընտրել:
Կեռված, ոլորուն
Լուսինը թերատ
Ճիշտ ու ճիշտ յաթաղան
Թուրքն է բռնադատ ...
Թո՛ւհ, մարդակե՛րպ ճիվաղ,
Արարքից զարշում
Մեծ մարդասերի
Տողերն եմ հիշում.
«Այստեղով թուրքն է
Սողացել անցել ...»:
Տեսած ավերի,
Խելացնոր ջարդի
Չափերից ցնցված
Ազնիվ մի ֆրանկ՝
Հյուգոն է լացել:
Ասում են՝ թուրքին
Վաղ էր հասկացել ...
Հեյ, լսո՞ւմ ես ինձ,
Դու, անամոթաբար կեղծող,
Գործած մեղքերից
Հետքերը հարթող,
Երբեք չպարտվող,
……………………
Դիվանագետ պոռնիկ
Բոսֆորի կիսալուսին,
Ուրիշ ի՞նչ գրեմ.
– Թուհ՝ քո նամուսին ...
Ով քրիստոնյա
Աշխարհի բարեպաշտ,
Երբ իմ ոստանում
Խաղաղ ու հաշտ
Հյուրընկալվելու են
Կրոն ու հավատ
Եվ իբրև առաջնեկ՝
Օրենքում գրված
Թիվ մեկ բարեպաշտ
Հային՝ մեծարանք,
Նրա սուրբ հողում
Հնչյունների ներքո
Սաղմոսերգության
Փառաբանելու ենք
Հավատքն Հիսուսի
Գոռ ձայնելու եմ
Բարձր ու անհաշտ.
– Ամո՛թ քեզ, աշխա՛րհ,
Դու՝ քրիստոնեապաշտ
Նաև արդարապաշտ
Եվ ուրիշ, ուրիշ
«Պաշտ»-երի շարան ...
Ո՞ւր էիր արդյոք,
Երբ քո մեղավոր,
Անտարբեր, անխոս
Աչքերի առջև
Վայրագ մի էթնոս՝
Թուրքը բարբարոս,
Մարտիրոսում էր
Հնի մի էպոս,
Մի ողջ ժողովուրդ,
Որը դավանում էր
Հիսուս Քրիստոս ...
Եվ այդ ամոթը՝
Ճակատիդ խարան,
Դեռնս մխում է,
Ինչպես կիսախեղդ,
Լուծումը պրատ,
Մի դատ անավարտ:
Հիշի՛ր, ո՛վ աշխարհ,
Որ ավեր հոգում
Անթեղված վրեժ,
Բոցը՝ վառ ու թեժ
Լեռնացած ցասում,
Հայը լուռ սպասում.
Թուրքին պատասխան
Դատին է սպասում:
Եվ հավատ ունեմ,
Արցախն է վկան,
Կրկին թունդ առած
Կանչը հաղթական:
Կգա, կգա այդ օրը՝
Հայի պատասխան.
Ակն ընդական,
Ատամն ընդ ատաման ...

## Չափածո բաց նամակ կամ խրատ-ուղերձ Իլհամ փաշայի վայրահաչ բաշիբոզուկներին

*(Սիրով նվիրում եմ հայոց Արցախ աշխարհի զոյամարտերի մասնակից, քաջակորով և ազատատենչ հայորդիներին)*

Համբերատար հայ ենք
Չափից շատ, ավա՛ղ,
Բայց երբ պարանոցին
Պրկված պարանի
Գոյ խեղդող ցավից
Հոգին ձայնեց՝ վա՛խ,
Պապերս են ասել.
«Քոչդ առ ու փախ»:
Լսո՛ւմ ես արդյոք,
Չարամի՛տ, խարդա՛խ,
Գեներիդ մեջ
Հենն ակնբախ
Ազերի դաչաղ:
Հե՛յ, դո՛ւք, թափառիկ,
Երկինքը՝ տանիք,
Մահ, ավեր սփռող
Սաղմերից ծնված,
Քոչվոր ցեղի հետ
Մինչ Արցախ հասած,
Ծագում, տոհմանուն
Քանիցս փոխած,
Այսօր ազգովին
«Ազերի» օծված
Վայրասուն ցեղեր,
Արցախն հայազուն,
Մաշտոցն, իր լեզուն
Անօրեն գրչով
Մայր գրկից զատված,
Մեր բազկի ուժով
Նորեն հետ բերված
Հայաշունչ օջախն
Անկա՛խ է, անկա՛խ:
Հոգուս մեղք չանեմ.
Ղուրան չեմ թերթել,
Ոչ էլ չափածո
Սուրահներ սերտել.
Քիչ ու միչ լսել,
Ականջիս հասել,
Պատմածից գիտեմ,
Որ, այլակրո՛ն,
Դուք չունեք մեռոն:
Հարց եմ ուղղում.
Բայց ինչո՞ւ, ինչո՞ւ,
Երբ ունեք կրոն,
Թեկուզ անմեռոն,
Պատիվ ու նամուս
Քարոզող հավատ,
Հանց պատվազուրկ
Պոռնիկ կամ կավատ
Մոռացել եք
Սրբությու՛ն, հավա՛տ,
Պատիվ ու նամուս ...
Եվ Այր կոչվելու
Հույսերն են անհույս:
Բավ է բարբառել,
Մեծախոս ճառել
Եվ խեղդոց դառնալ
Արցախցու շնչին:
Այլապես հոգնած,
Ծեծված շան նման
Դունչը վեր ցցած
Ձեր ողբահաչից,
Ականջ զզվեցնող,
Պարծենկոտ, գոռոզ
Մարտակոչ կանչից,
Ի պատասխան
Ձեր վայրահաչին,
Այս անգամ ուժգին,
Թափով մոլեգին
Հպարտ հայորդաց
Բռունցքը կիջնի
Մեր սուրբ օջախից
Գող շան նման
Պատառ թոցնող
Ձեր լպիրշ դնչին:
Հիշե՛ք մեկընդմիշտ
Ճշմարիտը ճիշտ՝
Մեր վանքն Ամարաս
Ձեզ համար՝ անհաս,
Երկիրն իմ Արցախ՝
Ազատ ու անկախ,
Թափառ ցեղերին
Երբե՛ք ու երբե՛ք
Չի դառնա փարախ:

## Հերոսները երբե՛ք, երբե՛ք չեն մեռնում

*(Նվիրում եմ իր հայրենի Թալիշ գյուղի ազատագրման համար կյանքը նվիրաբերած Աշոտ Ճաղարյանին (Արծիվ Աշոտ)*

Հերոսները երբե՛ք,
երբե՛ք չեն մեռնում ...
Ապրողի համար՝
մարդ-լեգենդ դառնում,
Թեկուզ բացակա,
թեկուզ հնի հուշ,
Երբեք չխամրող
անցյալի վերհուշ,
Էկրանից, գրքից,
նկար-պատկերից
Նորի՛ց ու նորի՛ց
հարություն առնում,
Սրբացած կյանքի
կենդանն է հառնում:
Հիշե՛նք բոլորին
անուն առ անուն:
Արծիվները երբե՛ք,
երբե՛ք չեն մեռնում,
Անմահ հոգիները
երկնքում են սավառնում:

**Գագիկ ԵՐԻՑՅԱՆ**
**ՀՀ, ք. Հրազդան**

# Գործարար. «Առաջին անգամ է, որ հայն արտագաղթում է հայի ձեռքով»

## Հարցազրույց շվեյցարահայ գործարար Հակոբ Ավագյանի հետ



Հակոբ Ավագյանին շվեյցարահայ համայնքում գրեթե բոլորն են ճանաչում: Գործարար է՝ գորգերի վաճառքով զբաղվող Tapis d'Orient ընկերության հիմնադիրն ու սեփականատերը: Նաև քաղաքականության մեջ է ակտիվ, Շվեյցարիայի քրիստոնեա-դեմոկրատական կուսակցության՝ Ժնևի փոխնախագահն է: Հ. Ավագյանի հետ մեր զրույցը պետք է լիներ շվեյցարահայերի մասին, սակայն այնպես ստացվեց, որ ավելի շատ խոսվեց Հայաստանի ու հայաստանցիների խնդիրների մասին:

***– Պրն Ավագյան, ասում են, որ Դուք Շվեյցարիայի հայկական գաղթօջախի ամենաակտիվ մարդկանցից եք: Նաև ասում են, որ Հայաստանից արտագաղթողներին շատ եք օգնում: Շա՞տ մարդիկ են գալիս Հայաստանից Շվեյցարիա:***

– Վերջին շրջանում այդքան շատ չեն գալիս, եկողներն արդեն եկել են: Հիմնականում Գերմանիա են գնում, Իսպանիա: Բայց արտագաղթի այդ մեծ ալիքն ինձ իրոք շատ է մտահոգում: Մենք աշխատասեր ժողովուրդ ենք: Եթե մարդիկ աշխատանք ունենան, իրենց երկիրը չեն լքի: Անգամ պատերազմի ժամանակ լույս չկար, գազ չկար, բայց ժողովուրդը երկրից չէր արտագաղթում: Նաև արդարության պակասն է դեր խաղում: Ամեն տարի զորակոչի թիվը նվազում է: Սա է վտանգը, երբ երկրում բանակ գնացողների թիվը նվազում է: Այսքան մտահոգ երբեք չեմ եղել: Ու առավել ցավում եմ, որովհետև պատմության մեջ առաջին անգամ է, որ հայն արտագաղթում է հայի ձեռքով: Նման բան երբեք չի եղել:

***– Ի՞նչ հարցերով են Ձեզ դիմում նոր եկածները, ի՞նչ խնդիրներ ունեն:***

– Ես դրա մասին չեմ ուզում խոսել: Ինձ ավելի շատ մտահոգում է հարցի մյուս կողմը՝ ինչպե՞ս անել, որ մարդիկ չարտագաղթեն, մնան Հայաստանում: Չէ՞ որ մենք՝ հայերս, ստեղծող ազգ ենք: Մենք Եղեռնի ժամանակ ոտաբոբիկ, քաղցած գաղթել ենք արաբական երկրներ՝ առանց ոչինչ ունենալու, առանց լեզուն իմանալու: Բայց կայացել ենք: Ոչ միայն կայացել ենք, այլև նպաստել ենք, որ այդ երկրները զարգանան, ծաղկեն: Իսկ մեր սեփական երկրի մեջ՝ Հայաստանում, թույլ չեն տալիս դա անել: Ոչ թե չենք կարողանում, այլ թույլ չեն տալիս: Ես չեմ ուզում մարդիկ Հայաստանից մեկնեն: Գիտե՞ք՝ քանի անգամ եմ օդանավի տոմս գնել և մարդկանց ետ ճանապարհել Հայաստան:

***– Բայց չէ՞ որ, եթե Հայաստանում այդ մարդու համար ավելի լավ լիներ, նա չէր լքի երկիրը:***

– Որովհետև բոլորի մոտ տպավորություն է, որ Եվրոպայում շատ լավ է, դրամը թափված է: Գիտեն, թե հենց ինքնաթիռից իջնեն՝ 50 դոլարանոցները թափված են լինելու ոտքերի տակ, իրենք էլ հավաքելու են: Դա այդպես չէ: Գալիս են, հետո են համոզվում, որ հեշտ չի: Անգամ մենք, որ մի քանի սերունդ այստեղ ենք, ինչ-որ բանի հասել ենք, խնդիրներ ունենք: Բայց մենք այստեղ մեր խնդիրները մի կողմ դրած՝ ուրիշ բաներով ենք մտահոգվում: Շվեյցարացին երեկոյան նստում է ու կնոջ հետ քննարկում՝ ուր գնան հանգստանալու կամ մեքենան փոխեն՝ որի՞ց գնեն: Մենք նստում-քննարկում ենք արտագաղթի հարցը, Ցեղասպանության ճանաչման հարցը, սահմանի կրակոցները... Ես Հայաստան շատ եմ այցելում ու լավ գիտեմ վիճակը: Գյումրեցին աշխատանք չի գտնում, գնում է Երևան: Երևանում էլ աշխատանք չի գտնում, հուսահատվում է և գնում ուրիշ երկիր: Իսկ եթե Գյումրիում գործ ունենար՝ Գյումրին էլ չէր թողնի: Կամ՝ Երևանում շքեղ խանութ կա, հարցնում ես՝ ո՞ւմն է, ասում են՝ այսինչինը: Այն մյուսն ումն է, նորից այդ նույն մարդունը: Այդ մարդը խանութներ ունի, գործարաններ: Ամբողջը մի քանի հոգու ձեռքում է: Նման պայմաններում փոքր ու միջին բիզնեսն ինչպե՞ս զարգանա: Այդ մարդիկ անոթի չեն, անկուշտ են: Դրա համար էլ երկիրը դատարկվում է: Արդեն ժամանակն է զսպելու: Ժամանակն է, որ ազահ չլինեն, նրանք, ովքեր այսօր աթոռի վրա նստած են՝ բավական է ուտել: Թող գործարաններ դնեն, ներդրումներ անեն հայրենիքում:

***– Իսկ սիրիահայերը գալի՞ս են Շվեյցարիա:***

– Ոչ: Սիրիահայերը Հայաստան են գնում: Որովհետև հայրենասեր են, ուզում են իրենց հայրենիքում ապրել: Ու եթե հավասար պայմաններ լինեն, արդարություն լինի՝ կհիմնավորվեն, օգուտ կտան երկրին: Շատ լավ մասնագետներ են, ու ամենակարևորը՝ շատ ազնիվ են: Ես եթե բիզնես ունենայի Հայաստանում՝ մեծ հաճույքով հալեպցի հայերին կվերցնեի աշխատանքի: Չգիտեն՝ ինչ է խաբելը: Ոչ թե չեն խաբում, այլ չեն էլ մտածում, որ կարելի է խաբել:

***– Պրն Ավագյան, Հայաստանում տնտեսությունը զարգացնելու ու աշխատատեղեր բացելու ամենակարևոր պայմանը ներդրումներն են: Ինչո՞ւ սփյուռքահայերը Հայաստանին օգնում են, բայց բիզնես ներդրումներ գրեթե չեն անում:***

– Որովհետև բիզնես անելու համար օրենք ու պարկեշտություն պետք է լինի: Եթե ես Հայաստանում բիզնես դնեմ ու խնդիր ունենամ այդ օլիգարխներից մեկի հետ, ինչպե՞ս կարող եմ օրինական ճանապարհով իմ իրավունքները պաշտպանել:

***– Որքան գիտեմ, Դուք Հայաստանում բիզնես եք ունեցել: Ինչո՞ւ չշարունակեցիք: Ձեր նշած խնդիրների պատճառո՞վ:***

– Որովհետև ինձ խաբեցին:

***– Իշխանություննե՞րը:***

– Ոչ, առանձին մարդիկ: Խաբեցին, հիասթափվեցի և դուրս եկա: Բայց հիմա այսքանից հետո նորից պատրաստվում եմ մի խոշոր գործ ձեռնարկել Հայաստանում: Մոտ ապագայում արաբ գործարարների մի խմբի հետ կայցելեմ հենց այդ հարցերով: Ես շատ հարուստ մարդ չեմ, բայց կապերս շատ են: Եվ այդ կապերն օգտագործելով՝ կփորձեմ ինչ-որ բաներ անել: Հիմա Հովիկ Աբրահամյանի նկատմամբ շատ վստահություն ունեմ: Ճարպիկ մարդ է, պրակտիկ, խելացի մարդ է: Տեսական չէ: Տիգրան Սարգսյանն ավելի տեսական էր, իսկ Աբրահամյանն ավելի գետնի վրայի մարդ է: Վստահ եմ, որ փոփոխություն կլինի, և ես էլ բոլոր ուժերս կներդնեմ:

***– Բայց չէ՞ որ համակարգը նույնն է: Ինչո՞ւ եք այդքան հավատում Հովիկ Աբրահամյանին:***

– Ինքը ավելի ուժ ունի, քան Տիգրան Սարգսյանը:

***– Իսկ ցանկություն ունի՞ փոխելու ինչ-որ բան:***

– Կարծում եմ՝ այո: Նորից եմ կրկնում, ինքը Տիգրան Սարգսյան չէ, ինքն ուժի մի մասն է, իսկ Տիգրան Սարգսյանն աութսայդեր էր: Ես ներքին քաղաքականության մեջ չեմ ուզում խառնվել: Ինձ նման իրավունք չեմ վերապահում, որովհետև ես հայաստանցի չեմ: Դե, ձեր ներքին գործն է: Բայց կողմ եմ, որ ոչ թե իշխանափոխություն լինի, այլ իշխանությունն իր քաղաքականությունը փոխի, մի քիչ կշտանա: Մեզ ցնցումներ պետք չեն, թշնամին մեր դռանն է:

***– Շվեյցարիան աշխարհի ֆինանսական կենտրոններից մեկն է, որտեղ աշխարհի մեծահարուստները պահում են իրենց միլիոնները: Ասում են՝ Հայաստանից նույնպես մեծ գումարներ են հոսում դեպի Շվեյցարիա: Դուք նման տեղեկություններ ունե՞ք: Գիտե՞ք մարդկանց, որ իրենց փողը տեղափոխում են Հայաստանից Շվեյցարիա:***

– Նման բան ասելու համար պետք է ձեռքիդ փաստեր ունենաս: Չեմ կարող բամբասանք անել և նման բաներ ասել, եթե վստահ չեմ: Բայց ընդհանուր առմամբ, լսում ենք նման բաների մասին: Մյուս կողմից՝ ավելի լավ է՝ փողերը եվրոպական բանկերում լինեն, քան կազինոներում մսխեն: Գոնե կիմանանք՝ բանկերում հայկական հարստություն է, կուտակված է մի տեղ, և մի օր կարող է

⊃25

# «Քանի հայը կապրի, հայոց «այբ-բեն»-ը չի մեռնի... Քանի հայոց «այբ-բեն»-ը կապրի, հայը չի մեռնի...»

**Ավետիք ԻՍԱՀԱԿՅԱՆ**



Կալուգա քաղաքի «Գալակտիկա» մանկապատանեկան ստեղծագործական կենտրոնում գործում է «Ժողովրդական ավանդույթների» մանկական միավորումը, որն իր առջև հայապահպանության, հայոց լեզվի, հայ ազգային ավանդույթների շատ կարևոր խնդիր է դրել: Այս խնդրի իրագործմանը սիրով ընդառաջ եկան կենտրոնի տնօրեն Ալլա Յուրևնա Կոնոնովան և քաղաքի թիվ 15 դպրոցի տնօրեն Տատյանա Նիկոլաևնա Դրոզդովան, ասելով որ հայերս էլ (մնացած քաղաքակիրթ ազգերի նման) օտարության մեջ մեր մշակույթը, գիրը, լեզուն, սովորույթները պահպանելու իրավունք ունենք:

Ուրախությամբ, հպարտությամբ եմ լցվում, երբ խմբակ հաճախող յուրաքանչյուր աշակերտի մեջ տեսնում եմ այն սերը, որն իրենց ընտանիքներում կա՝ դեպի մայրենին, դեպի Հայաստանը: Այստեղ մեծ է մեր մայրերի, տատիկների դերը, որոնք իրենց զավակների համար մայր-տաճարներ են: «Ժողովրդական ավանդույթների» խմբակի սաներին՝ Մարիետային, Սյուզաննային, Արեգին, Մարիային, Տամիլային, Կարինային, Աշոտին, Կարենին, Արամին, Էլիզային, Մելինեին, Սարգիսին, Մարատին ցանկանում եմ, որ իրենց մայրենի լեզուն պահեն պայծառ ու հասցնեն դարերից դար:

**Տաթեւիկ ՆԵՐՍՈՅԱՆ,**
**հայոց լեզվի ուսուցչուհի**

---

**Դերենիկ Դեմիրճյան**

# ՀԱՅԸ

Արդյոք մի բան հասկանու՞մ եք հայից... Որքա՜ն անհույս էր թվում իր ապագան, բայց և որքա՜ն հուսացող է նա: Ասենք իր կյանքում երկու բան բնավ չտեսավ. մեկ՝ բախտ, մեկ էլ հուսահատություն: Ինչպե՞ս ճանաչես նրան, ինչպե՞ս չափես... Անցիր նրա երկիրը: Ի՜նչ հիասքանչ վանքեր, հոյակապ աշտարակներ, գողտրիկ խաչքարեր: Հավատալ կարելի՞ է, թե ինքն է շինել այդ բոլորը: Խոստովանությունն ես լսում՝ հայհոյանքների կեսը եկեղեցի ու Աստված: Լցրել է իր երկիրը եկեղեցիներով, բայց տարին մեկ անգամ չի մտնում մեջը աղոթելու: Աղոթք էլ չի անում առօրյա կյանքում... Եվ հավատալի՞ բան է, որ իր պատմությունը ամենամեծ կրոնական պատերազմների պատմություն է, և այս չաղոթող ցեղի Նարեկացու շուրթերից թռավ աղոթքի ամենաբարձր թռիչքը առ Աստված... Տանել չի կարողանում ծես, ձև, աստիճան, քաղաքավարություն: Ռամիկ է գերազանցապես: Իր Խրիմյան Հայրիկը ամենից շատ կաթողիկոսությունը ատեց: Դիպլոմատիայի մեջ մի բանու՞մ է շատ հոգածու՝ անկեղծ լինել: Այնքա՜ն անկեղծ է և միամիտ, որ կասկածելի, խորամանկի և կեղծավորի տպավորություն է անում: Մինչդեռ իր հարևանները՝ այս աշխարհի բեմի վրա դեր կատարելով միայն, ցույց են տալիս, թե կացնով հարվածում են դիմացինին, հայը իսկապես կացինն իջեցնում է գլխին: «Ապա ճշմարտությո՛ւնը», – մտահոգվում է նա:

Դանդալոշ է ու խոնարհ իր Սասունցի Դավթի նման և անսպասելի ըմբոստ, հարվածող նրա պես: Քծնում է, սողկանում օտարի ոտքի տակ, ինչպես իր Ջենով Օհանը, բայց երբ վրա է հասնում գերագույն վտանգը, հերոսանում է հանկարծ և ծառանում վիշապի նման: Բարի է առհասարակ, շոյի՛ր և կկողոպտվի... Այնտեղ, ուր մի ուրիշ ցեղ ուրիշների միայն սերը կարող է վաստակել, հայը գտնում է հնարը ատելություն առաջ բերելու: Տաղանդ է՝ իր դեմ ատելություն ստեղծելու: Ուրիշի հաջողության մեջ նախանձոտ է, ինչպես վարդապետ: Եթե գժտվեց մեկի հետ, ոխակալ է, ինչպես ուղտ: Ամեն հայ մի հայ ունի, որի հետ թշնամի է մինչև մահ: Սա նրա անհրաժեշտությունն է: Անկարգ է և անիշխանական թե՛ հասարակության, թե՛ պետության և թե՛ գաղափարների մեջ: Իբրև ժողովրդական՝ անմիաբան է, անտանելի, խռովարար... Իր կռիվը երեք ճակատի վրա էր միաժամանակ՝ շահի դեմ, սուլթանի դեմ, ցարի դեմ... Թաթարն էր մոտը սպասեց ռուսին, ռուսը եկավ՝ աչքը եվրոպացուն էր, եկավ անգլիացին՝ դարձյալ ռուսին էր սպասում, ռուսն է գալիս՝ չի ընդունում: ՄԻ ՁԵՌՔԸ ՃԱՆԿՌՏԵԼՈՎ ՀԻՄՆՈՒՄ Է ԻՐ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ, ՄՅՈՒՍ ՁԵՌՔԸ ՃԻԳ Է ԱՆՈՒՄ ՀԻՄՔԸ ՔԱՆԴԵԼՈՒ:

Հայի ամենամեծ առաքինությո՞ւնն ես ուզում. ամենաներողամիտ ցեղը աշխարհիս մեջ... Չի՛ ուզում, որ իրան դիպչեն, մոտենան, սիրեն թեկուզ: Նա մեկուսի է, խստակյաց, բարի և ազատասեր:

Երբ նայում եմ հային, ինձ թվում է, թե նրա վիրավորանքը այն արծվի վիրավորանքն է, որին ցած են բերել բարձր լեռներից: Չի սիրում ո՛չ ստրկություն, ո՛չ երջանկություն, գերադասում է տառապանք և ազատություն: Մաղձոտ է, մեկուսի, բայց չունի մեկուսի ատելություն, որ բարձր լեռներին անծանոթ զգացում է: Գերի արծվի խոր վիշտն է իր սրտի մեջ: Սա Հայկն է, որին զրկել են իր կյանքի միակ պայմանից՝ ազատությունից:

«Ոչինչ չեմ ուզում ձեզնից, – ասում է նա իր նեղիչներին, – ձեզ լինի ձեր լուծը, ձեզ լինի ձեր երջանկությունը, գնացե՛ք, ապրեցե՛ք խաղաղ և երջանիկ: Եթե դուք սիրում եք կյանքը, ես սիրում եմ կյանքից ավելի թանկ բան՝ Ազատությունը...»:

(կրճատումներով)

---

**24Ձ**

օգտագործվել:

***– Հայկական համայնքն այստեղ կազմակերպվա՞ծ է, միասնակա՞ն է: Որքանով հասկացա, ինչ-որ խնդիրներ կան:***

– Դժբախտաբար, այո, դուք ճիշտ եք: Մինչև 4 տարի առաջ մենք Եվրոպայի ամենից լավ կազմակերպված գաղութներից մեկն էինք՝ հայախոս, միասնական, որը մեծապես օգնում էր Հայաստանին: Ու այս գաղութն արժանի չէր, որ այս օրին հասներ:

***– Խնդիրը ո՞րն է, ի՞նչը փոխվեց:***

– Այսպես ասեմ՝ պետք չէ, որ Հայաստանը խառնվի գաղութների ներքին գործերին: Այդ գաղութները, եթե զորավոր լինեն ու խաղաղ, շատ ներդրումներ կարող են անել Հայաստանում, օգնել քաղաքականապես ու տնտեսապես: Բայց երբ խանգարում են...

***– Ո՞վ է խանգարում:***

– Չեմ կարող ասել: Անհամություն կա այսօր գաղութի մեջ... Ու դրա արդյունքում՝ այս գաղութն իր պոտենցիալի 15%-ն էլ չի կարողանում օգտագործել: Խնդիրները ներքին չեն: Դրա համար ասում եմ՝ Սփյուռքը մի քանդեք: Եթե կարողանում եք՝ Հայաստանում մի բան արեք օգտակար, Սփյուռքի գործերին մի խառնվեք:

**ԲԱԲԿԵՆ ԹՈՒՆՅԱՆ**

# ՉԵՄ ՄՈՌԱՆՈՒՄ, ՈՐ ՀԱՅ ԵՄ





**Հարցազրույց նկարիչ, ՀՀ, Արցախի ու Չեխիայի, Մորավիայի նկարիչների միության անդամ, արվեստի թեորետիկ մասնագետ, Երևանի մանկավարժական համալսարանի Հայոց պատմության ամբիոնի պատվավոր անդամ Աշոտ Առաքելյանի հետ:**

**Հին ժամանակներից հայերը փայփայել են իրենց գեղարվեստական սովորույթները, որոնք արտացոլում են յուրահատուկ մշակույթը և բնապատկերները: Առօրյա կյանքի ասպեկտներն արտահայտված են ամենագեղարվեստական ձևով. ասեղնագործության, զարդերի, փորագրությունների և դիզայնի մեջ:**

**Հայկական նկարչությունը ծաղկում ապրեց 19-րդ դարում: Այդ շրջանի նկարիչները, ինչպես դիմանկարիչ Հակոբ Հովնաթանյանը և ծովանկարիչ Հովհաննես (Իվան) Այվազովսկին, մինչ օրս միջազգային ճանաչում են վայելում: 20-րդ դարում Մարտիրոս Սարյանը պատկերեց բնության էությունը նոր լույսի ներքո, իսկ Արշիլ Գորկին մեծ ազդեցություն ունեցավ Նյու-Յորքում երիտասարդ ամերիկյան նկարիչների սերնդի վրա, մինչդեռ Գառզուն և Ժանսեմը հռչակ և համբավ ձեռք բերեցին Ֆրանսիայում: Այցելությունը Սարյանի այգի Ձեզ կծանոթացնի հայ ժամանակակից նկարիչների հետ:**

**Այս առիթով զրուցեցինք Աշոտ Առաքելյանի հետ:**

*Ծնվել է 1948 թ Լեռնային Ղարաբաղի Հանրապետության Մարտունու շրջանի Ննգի գյուղում:*

*1955-1966 թթ. սովորել է Երևանի Վորոշիլովի անվան դպրոցում:*

*1966-70 թթ. սովորել է Երևանի Մանկավարժական Պետական ինստիտուտում:*

*Բազմիցս մասնակցել է մասնավոր դասընթացների թե մեր, թե արտերկրում:*

*1992 թ. մինչ օրս ապրում է Չեխիայի Հանրապետությունում:*







***– Մի քանի խոսքով պատմեք, թե ինչպես որոշեցիք դառնալ նկարիչ:***

– Իմ կարծիքով, միակ մասնագիտությունը, որ մարդ չի կարող ընտրել, դա նկարչությունն է: Այն տրված է ի ծնե բնության կողմից, և արտահայտվում է ինքստինքյան:

***– Մտավորական ու նկարիչ մարդու Ձեր բնորոշումը:***

– Չնայած եղել են և որոշ մտավորական նկարիչներ, սակայն նկարիչը մտավորական չէ, այլ արվեստի անձնավորություն: Նկարիչը նկարում է ինքնաբերաբար, այն ինչ տրված է ներքուստ իրեն, սակայն երբ նրա մոտ առկա է լինում մտավորականի միտքը, նա դառնում է կատարյալ, իսկ դա ոչ բոլորի մոտ է ստացվում: Գիտեմ և նկարիչի, որն անգամ դիմում չի կարող գրել, կամ էլ գոնե մաքուր հայերեն խոսել:

Երբ ընթերցում ենք պատմության դասագրքերը, մշակույթի բաժնում սկսվում է գիտության և տեխնիկայի զարգացումը, հետո առանձին արվեստի և մշակույթի, վերջում սպորտի:

***– Մենք ունե՞նք մտավորականություն ու լավ նկարիչներ:***

– Հայ ժողովուրդը ի սկզբանե մշակույթի և գիտության մեջ առաջնակարգ տեղում է գտնվել, սակայն քաղաքականության և դիվանագիտության մեջ եղել է թույլ և տկար: Երբեմն մենք նմանվում ենք այն ծեր կնոջը, ով ասում է, գիտեք ես ժամանակին գեղեցիկ եմ եղել, իսկ առօրյա կյանքում

⊃27





***26⊃***

հայ ժողովրդին չի հաջողվում աշխարհին ներկայացնել այն բավարար, իսկ թուրքերին դա հաջողվում է գերազանց:

***– Ի՞նչը կարող է միավորել նկարիչներին:***

– Պետության հոգատարությունը, որը համարյա բացակայում է և այն խղճուկ վիճակում է:

***– Ի՞նչն է տարանջատում մտավորականությանը ու նկարիչներին:***

– Ցավոք սրտի ոչ միայն մտավորականությանն ու նկարիչներին, այլ ընդհանրապես մեր ժողովրդին, որ միասնական չէ: Փիլիսոփայական կատեգորիա կա, որ կեցությունն է որոշում գիտակցությունը: Մեր քաղաքական գործիչներին ձեռնտու չէ երևի, որ ժողովուրդը և հատկապես մտավորականությունը հասնի գիտակցության, այդ դեպքում իրենց վտանգ կարող է սպառնալ, և ամեն ինչ անում են, որ ժողովուրդը մտածի միայն մի կտոր հացի մասին:

***– Հավատու՞մ եք, որ կգան համախմբման ժամանակները:***

– Իհարկե հավատում եմ: Մեր ժողովուրդը երբեմն ինձ թվում է, որ քաղաքական դաշտում աշխարհի ամենապասիվ, իներտ ժողովուրդներից է, ոտքի է կանգնում այն ժամանակ, երբ դանակը հասնում է ոսկորին: Պաղեստինյան մի փոքր ժողովուրդ 40 տարի կռվում է աշխարհի երկու հզոր երկրների դեմ` ԱՄՆ-ի և Իսրայելի, և մինչև վերջ ձգտում հասնել նպատակին:

***– Ի՞նչ հասարակական պահանջ է դրված մտավորական ու նկարիչ մարդու առջև:***

– Բարձր պահել հայրենիքի արժեքներն, իսկ վտանգի դեպքում լինել ավանգարդային:

***– Ո՞րնէ մտավորականի ու նկարչի տեղը:***

– Դժվարանում եմ պատասխանել հարցին: Յուրաքանչյուրն անկախ ամենից ինքստիքյան գտնում է իր տեղը հասարակական կյանքում, սակայն, մտավորականի և նկարչի դերը առանձնահատուկ է, նա իր ազգի ծաղիկն է և ազգին պատիվ է բերում գիտությամբ և արվեստով:

***– Ի՞նչն է Ձեզ ամենից առավել անհանգստացնում մեր երկրում:***

– Այնքան ցավոտ հարց է, որ անհնար է բոլորն ասել: Թերևս կոմունիստների ժամանակ յուրաքանչյուր քաղաքացի իրեն հարգված էր զգում, որ շատ թե քիչ կային օրենքներ, որոնք պաշտպանում էին յուրաքանչյուրին և իրեն լիիրավ քաղաքացի էր զգում: Այժմ երկիրը վեր է ածվել ճորտերի և ճորտատերերի երկրի: Մի 50-100 անձնավորություն տիրացել են երկրի տնտեսությանը, հանրապետության հանքերին: Գոնե Անդրանիկ Զորավարի խոսքերը հիշեն. «Երբ գլուխները դնում են բարձին քնելու, մի քիչ էլ ազգի մասին մտածեն»: Հայաստանը վեր է ածվել մոնոպոլ իշխանության: Ամերիկյան տնտեսությունը, օրինակ հենված է միջին և մանր բիզնեսի վրա: Երբեմն ինձ թվում է, թե այդ «մարդիկ» ապրում են միայն ապրելու համար, մի բան ,որ կենդանուն է հատուկ: Հայաստանն ունի հարուստ բնական հանքեր, իսկ բնական հանքերը ժողովրդին են պատկանում,որը մի 2-3 տարում կարող է երկրի պարտքերը մարել և եթե այն լրիվ պետական բյուջե մտնի ժողովրդի աշխատավարձը միանգամից 20-40% կավելանա:

Շատ եմ ցավում և գռեհիկ հայերենի խոսակցության համար, քաղաքական կուլտուրայի բացակայության համար, անտարբերության ու արհամարական վերաբերմունքի համար, կանանց հանդեպ լկտի վերաբերմունքի համար, 100-ին հասնող լըբանոցների համար, այլասերությունը հասել է բարձրագույն աստիճանի: Եվրոպական ոչ մի երկրում նման ռեստորան-լըբանոցներ չկան: Ժողովուրդն այս վիճակում կգոյատևի թե կխելագարվի, չգիտեմ: Կամ էլ թե չէ աստիճանաբար կփախչեն երկրից: Թող մնան իրենք միայն ... տեսնենք հետո ինչ պետք է անեն, երևի վերջում էլ իրենք երկրի հողերը վաճառեն ու գնան Ամերիկա:

***– Մի՞թե Աշոտ Առաքելյանը հիասթափված է:***

– Հիասթափված չեմ, սակայն հոգուս խորքում խռովք կա և սպասում արդարության: Մերօրյա ու պատմական ճշմարտությունը թույլ է տալիս ասելու, գիտցեք, սիրելի ժողովուրդ,դեռ ավելի պայծառորեն կշողա հայոց բիբլիական փառքի աստղը, ավելի պայծառորեն կճառաչեն նրա Առավոտ լուսոն ու Արեգակն արդար և ավելի առատ լույս կծագի նրա ծիրանաշող հորիզոնում: Ես հավատում եմ դրան ու մաղթում իմ ժողովրդին բարին: Թող եղիցի այդպես, թող եղիցի առավոտ լուսոն մեր հայոց աշխարհին ու մեր ժողովրդին: Եվ այդ աստվածամեռոն ժամին օրհնանք կտանք մեր ժողովրդին և Սևակյան Անլռելի զանգակակոչով կղողանջենք

– Ողբանք մեռելոց ...
– Բեկանենք շանթեր ...
– Կոչենք ապրողաց ...

***– Ի՞նչ երազանքներ ունեք:***

– Մարո Մարգարյանի մի բանաստեղծությամբ ասած, երանի թե մի օր հավաքվեին իմ անցած տարիները և երամի պես մեկ-մեկ հյուր գային ինձ: Նաև մեկտեղված և մեկժողված տեսնեի իմ ժողովրդին մեկ ընդհանուր պատմական հայկական հողում:

***– Ձեր կարծիքով ինչպիսի կարգավիճակում են գտնվում մեր երկրի երիտասարդ նկարիչները:***

– Կցանկանայի ամուր կամք դիմանալու նկարչի ճակատագրին, քանի որ նկարիչները հարստանում են միայն մահվանից հետո:

***– Իսկ մեր ավանդույթների հետ ինչպե՞ս վարվենք:***

– Պահպանել աչքի լույսի պես, այնպես ինչպես մուսուլմաններն են պահպանում:

***– Խոսք՝ ուղղված մեր հայ մտավորականներին ու նկարիչներին:***

– Սիրել իրար: Մարդու ամենամեծ արժանիքը հայրենիքն է ու պատիվը: Պատիվ ունեցող հայրը իր միակ տղային էլ է ուղարկել պատերազմի հայրենիքը պաշտպանելու:

***– Եթե Ձեզ առաջարկեին այլ մասնագիտություն, կհրաժարվեիք նկարելուց:***

– Նորից կընթանայի նույն ճանապարհով:

***– Եթե կարողանայիք ժամանակը հետ տալ, ի՞նչ կփոխեիք Ձեր կյանքում:***

– Ամեն ինչ կսկսեի այնպես, ինչպես սկսվել էր սկզբից: Վատ թե լավ:

***– Մի քանի խոսքով պատմեք Ձեր առաջիկա ծրագրերի մասին, որքան հաճախակի եք մասնակցում ցուցահանդեսների:***

– Յուրաքանչյուր տարի 1-2 անհատական և մեկ կամ երկու կոլեկտիվ ցուցահանդեսներ:

***– Իսկ որն է Ձեր սիրած նկարիչը, որ երբևէ նկարել եք և մինչ օրս առաջնորդվում եք աշխատելիս:***

– Գյուստավ Կլիմտ, Վան Գոգ, Գոգեն, Կլոդ Մանե, Շուլտեն, Մինաս: Բազմատեղյակ եմ համաշխարհային խոշորագույն նկարիչների ստեղծագործություններին, որոնցից ստացել եմ էսթետիկական ճաշակ, սակայն չեմ ընդօրինակել նրանց, ստեղծել եմ իմ ինքնուրույն արվեստը:

***– Ապրելով հեռավոր Չեխիայում, ի՞նչ հայապահպան գործունեություն եք ծավալում, պահպանելու համար մեր հայկական դարավոր մշակութային ու պատմական արժեքները:***

– Յուրաքանչյուր տարի 2-3 հոդված չեխական մամուլում հայ ժողովրդի մշակույթի, պատմության, Արցախի մասին: Երկու անգամ Մորավիայի TV 7 րոպեանոց հաղորդում Հայոց Ցեղասպանության մասին: Երբեմն դասախոսություններ Հայաստանի մասին:

***– Ձեր խրատը այսօրվա հուսալի երիտասարդներին ու սկսնակ նկարիչներին:***

– Ամուր կամք, քանի որ նկարիչը հիմնականում գնահատվում է ժամանակից ուշ, միաժամանակ վեհ ու բարձր պահել հայրենիքի պատիվը, սիրել ժողովրդին: Ապրելով հեռավոր Չեխիայում չեմ մոռանում, որ հայ եմ:

***Գարիկ ԱՎԵՏԻՍՅԱՆ***

# Ծանր զրույց մեծ արտիստ Ռաֆայել Քոթանջյանի հետ



...Եվ, այնուամենայնիվ, ընկած հասարակությունը մշակութային, այսինքն կենդանության նշաններ ցույց տալ չի կարող: Բայց եթե Գիրքն ասում է, թե սկզբից բանողն էր և ցույց տալով մեղավորին գլխի է գցում, թե առաջին ու ամենածանր քարը որի կողմ պիտի նետվի, էլ ի՞նչ կարիք կա իրար միս ուտել, թե կապը կտրածն իշխա՞նն է, թե՞ նրա տակ թպրտացող հասարակական լեշը: Եթե նրանք դեռ ծոց ծոցի են, ուրեմն, նրանց միջև փոխզիջում ու լուռ համաձայնություն կա. կռիվը նրանցից հեռու ավելի բարձրում է, որտեղից սրանց գլխին մեր «ուրիշը» պիտի կրակ տեղար, սրանց դինջ կյանքն այնպես հարամեր, որ սրանք միայն իմաստնություն հայցեին Տիրոջից: Բայց ո՞ւր է. Կիլիկիայի անկումից մինչև մեր արևելից կողով Ռուսաստանին տրանսպլանտացվելը, այսինքն հինգ դար շարունակ ամուլ, դափուդատարկ նստած էինք. ջհանդամ, թե քթներիս տակ նոր Եվրոպան էր գոյանում, գերմանական դասական փիլիսոփայությունն էր աշխարհը գրավել. պահ, իտալական վերածնունդ, չէ մի չէ Մոլիեր, Դեկարտ, Սպինոզա...

Մեր վանական գրագետներին պիտի թողնեինք, նրանցո՞վ լցնեինք մեր գլխի ամայի անապատը: Բա երկու հազար տարվա թատրոն ունեցող էթնոսս ինչպե՞ս դարեր շարունակ զսպեց իր մորուց արտիստիկ, ցեղական պլաստիկ գալարումները, հը՞: Բա մեր փթիրով լցված հակամշակութային հինգ դարերից հետո ի՞նչ եղավ. վայ, թիթիզ աշխարհ, էլի փոխվու՞մ ես, բա մենք հավես ունե՞նք մեր խխունջի վրա գոնե մի ծակ անենք, տեսնենք էս ի՞նչ խժդժություններով է դարձյալ բռնվել էս հիմար աշխարհը. տես է, ֆրանսիացիք մարդու իրավունքների հռչակագիրն են թափահարում, ասա այ խալխ, էդ անտերն ինչների՞դ էր պետք հացուջու՞ր է, ի՞նչ է:

Դրսում 19-րդ դարն է, պահո... Իտալիան, Հունաստանը, Անգլիան, անգամ Ռուսաստանն ու Թուրքիան հեղափոխական տենդի մեջ են, նոր աշխարհակարգ է հաստատվում. բա մենք ներվեր ունե՞նք ընկնենք էդպիսի անախորժ պատմության մեջ և ցնցենք պարսկական խանության վերածված մեր երկրի անդորրը «Օյմազ». հենա մեր «ուրիշներին» գլխներիցս ռադ կանենք, թող գնան ծվարեն Կալկաթա, Մադրաս, Ադրիատիկի հեռավոր ափեր, մի դար անց էլ Թիֆլիս, Ռուսաստան, Համզաչիման միայն թե մեր աչքից հեռու խաղան իրենց մշակութային խաղերը, կամ էլ թող «բազազ խանի բճի» պես աչքաբաց լինեն ու ջոկեն, թե երբ է պետք հանել ֆուրաժկեն ու գլխին ցիլինդր հագցնել, կամ այնպես կենալ արխալուղը, որ անգլիական մահուդե բաճկոնից տակից հանկարծ դրա երեսը չերևա: Հետո էլ ասում եք որտեղի՞ց եկավ այս անապատացումը. բա կարծում եք մի 20 տարվա իշխանություն ու հասարակություն կարո՞ղ էր այսքան քյալլագյոզություն անել. չէր կարող: Միջին հայաստանցին, էլ չեմ ասում դասական սփյուռքահայը գլուխդ կջարդի, թե այս մասին հետը խոսես, բայց, փառքդ շատ, որ Հայաստանում կան, ապրում են այն եզակիները, որոնց հետ հնարավոր է սկսել այս կարևոր զրույցը. շնորհակալություն մեծ արտիստ Ռաֆայել Քոթանջյանին:

***– Ձեզ սրճարանում այսպես շքեղ բազմած տեսա ու հիշեցի, որ երբ դպրոցական էի, հատուկ Ձեզ տեսնելու համար ժամերով պտտվում էի «Առագաստ» սրճարանի շուրջբոլորը, որ նայեմ, թե ինչպես եք ծխում Ձեր գեղեցիկ ծխամորճը, ապշահար հետևում էի Ձեր արտիստիկ ժեստերին, երբ նստում էիք սրճարանում ամբողջ սրճարանը բռնում էր Ձեր թավ օդիկոլոնի բույրը... Ինչո՞ւ եմ այսքան մանրամասն նկարագրում, որովհետև Դուք տիպիկ քաղաքային կերպար էիք, որից թափվում էր բարձր կուլտուրան: Քաղաքը քաղաք է դառնում, երբ նրա վրայով այսպիսի մարդ-իրադարձություններ են անցնում, որոնք քաղաքային մշակույթ են տեղով մեկ: Բայց, կարծես, այս պատգամները տեղ չհասան, որովհետև մեր քաղաքամայրը ոչ մի կերպ չի կարողանում իր գավառականությունը թոթափել, քաղաքային ավանդական տարածքները ասիմիլյացվում են, մաքուր քաղաքային տիպը գնալով տարրալուծվում է, ինչո՞ւ:***

– Գիտեք, այդ ամենն անձով գալիս է և, ցավոք, անձով գնում է: Անձի գնալուց հետո, իսպառ անհետանում է այդ կուլտուրան: Մենք ունեինք փայլուն անհատականություն ուղեղ Լևոն Ներսիսյան. նա մի առանձին մարդ-քաղաքակրթություն էր, բայց նրա հեռանալուց հետո իր գիծը հետը գնաց, ցավոք սրտի: Անձն է իր հետ բերում երևույթ, կուլտուրա, մտածելակերպ: Այդպիսին էր նաև Քոչարը: Ինքը տարօրինակ մարդ էր, բայց հետը մի ուրիշ մշակույթ էր բերում:

***– Դե, նա ժամանակին Պիկասոյի, Լեժեի հետ էր ցուցադրվում, հետո էլ նա բավականին ուշ վերադարձավ հայրենիք, կարծեմ 30-ականների վերջին, ուր ահագին չհասկացվածության ու փորձությունների ենթարկվեց, իսկ մինչ այդ Ներսիսյան դպրոցի կրթությունն ու միջավայրը, հետո՝ Փարիզ, Վենետիկ... Կրթությունն ու միջավայրը կառուցում է մարդուն, եթե անգամ նա հզոր գենետիկ ժառանգություն չի ստացել. վերջերս, օրինակ, նկատել եմ, որ այն միջավայրերում, ուր ծանծրացել եմ քննարկվող նյութին չտիրապետելու պատճառով, տարիներ անց այդ նյութն ականջիցս տեղափոխվում է գիտակցական խորշեր և ակամայից գիտելիք, իմացություն դառնում... Այնպես որ, խոսեք ինձ հետ ամենաբարդ բաների մասին, միևնույն է, ես դա մի օր կհասկանամ:***

– Հենց հիմա դրա մասին էլ խոսում ենք: Քոչարը, երբ արդեն վատ էր լսում, խնդրեց իր համար լսողական ապարատ բերեն: Բայց հետո հանեց ապարատը և սկսեց շրթունքներին հետևելով կլանել ինֆորմացիան: Ասացի «Ինչու՞ չես դնում ապարատը», ասաց «Սա մեխանիզմ է և վերցնում է ձայնն այն ուժգնությամբ, ինչպես լսվում է: Այդ պատճառով էլ ես համահավասար եմ լսում անցնող մեքենայի ձայնը և ձեր խոսքը, իսկ մարդկային ուղեղը կարողանում է զատել դրանք»: Ընտրողական բան ունի լսողությունը, վերցնում է այն, ինչ մեզ պետք է:

***– Փաստորեն, ականջն էլ աշխատելիս մտածում է, չէ՞ որ այն մարդկային ականջ է:***

– Այո (ծիծաղում է. Վ.Ս.):

***– Իսկ հիմա թույլ տվեք սկսել մեր հարցազրույցը...***

– Օ՜, դեռ չե՞նք սկսել...

***– Այս ընթացքում ես քաջություն էի հավաքում Ձեզ տալու այն հարցերը, որոնք, ի դեպ, ռիսկ չեմ անի տալ Հայաստանում ու սփյուռքում ապրող առնվազն 9,5 մլն հայի՝ զուտ իմ անվտանգությունից ելնելով, մեղմ ասած, գլուխս կջարդեն: Տեսեք՝ Կիլիկիայի անկումից մինչև 1827 թիվը՝ Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին, մեր հինգ դարը դատարկ է լրիվ, մշակութային լուրջ արժեքներ չենք ստեղծել: Աշխարհի հետ կատարյալ խզված ապրել ենք մեր փորահացի կյանքը: Վերցնենք միայն 17-րդ դարը՝ իտալական վերածնունդն էր բարձրանում,աշխարհում արդեն Լոպե դեՎեգա,Ռասինի ու Մոլիեր կար, բայց մեր գրականությունը դեռ ճառի ու քերթության սահմանում էր, բայց գրականությունն է, կարծեմ, թատրոնի հիմքը, չէ՞, իսկ մենք սնանկ ճարտասանությունից այն կողմ չանցանք, մեր մշակույթի խարիսխներն էլ գցեցինք երկրից դուրս: Ախր արդեն 16 դար է ադեկվատ չենք աշխարհին: Համաձայն չե՞ք:***

– Ես համաձայն եմ Ձեզ հետ: Շատ հաճախ առանձնացնում են նկարչությունը, բայց ժանրային նկարչություն էլ չի եղել, մեզ մոտ չեն զարգացել այն ճյուղերը, որոնք զարգացել են այլ ազգերի մոտ: Թատրոնին անդրադառնամ. ընդհանրապես, հանդիսատեսն է ստեղծում թատրոն, նրա կարոտը, ցանկությունը տեսնելու դա: Մենք չունենք հանդիսատեսի կուլտուրա, որը նայեր և կարոտ լիներ թատերական գործողության: Մենք չունենք հանդիսատես: Եթե չունես հանդիսատես, որտեղի՞ց ունենաս թատրոն:

***– Բա լիքը-լիքը բերան ասում ենք՝ ունենք 2 հազարամյա թատրոն, բայց նախորդ դարերի թատրոնն էլ քաղաքային տարածության գյուղամեջն էր. քաղքենին գալիս էր ոչ այնքան մի բան տեսնելու, որքան իրեն տեսցնելու, ոչ այնքան միտք ու զգացմունք, որքան հասարակական կեցվածք, ստատուս ստանալու, կարճ ասած՝ թատրոն հաճախելը ավելի շատ սոցիալական ակտ էր, ուր օթյակներում ծավալված հասարակական թատրոնն ավելին էր, քան բեմում ծավալվածը: Ես ուզում եմ հասկանալ՝ որտե՞ղ և ի՞նչ պատճառով ընդհատվեց մեր քաղաքակրթական գիծը.***

➲29

28

***այսօր ավելի լավ է մենք սա քննենք ու հասկանանք, պարապը լցնենք ճշմարտությամբ, որ կարողանանք արժեքներ, նոր իմաստներ ստեղծել: Թե չէ մեզ խաբկանքի վրա օրորելով՝ վերջնական դատարկության կարող ենք հասնել:***

– Սա պատմեմ, որպես Ձեր հարցի պատասխան: Ինձ և իմ կոլեգաներից մեկին ժամանակին շատ էր հետաքրքրում Լիտվայի թատրոնի աննախադեպ երևույթը, որ միանգամից մեջտեղ եկան դերասանական հետաքրքիր տիպարներ, որոնք ուրիշ էին, բոլորովին այլ և նրանք, կարծես, գրավում էին նաև ռուսական թատերական տարածքը: Մեզ համար շատ զարմանալի էր սա, և մենք հասանք մինչև Լիտվա, որովհետև ուզում էինք հասկանալ այս երևույթի պատճառները: Ուսանող էինք այդ ժամանակ: Մեզ ասացին, որ պետք է գնաք քաղաքից դուրս մի 3-4 ժամվա ճանապարհ, որ հասնենք մեր ուզած թատրոն: Մենք գիշերը նստեցինք ավտոբուս, իջանք բացարձակապես մի խուլ գյուղում. մեզ թվաց, թե խաբել են, որովհետև այդ հեռավոր ու մոլորված գյուղում ի՞նչ թատրոն: Մի մարդուց հարցրեցինք, թե որտե՞ղ է այստեղ թատրոնը, բայց, հաստատ համոզված էինք, որ այս մարդը կասի՝ ձեռ եք առնում, էս գյուղում ի՞նչ թատրոն: Բայց ինքն ահագին վիրավորվեց, որ մենք չգիտեինք իրենց թատրոնի տեղը և մի քիչ էլ դժկամությամբ տեղը ցույց տվեց: Տեսնենք ի՞նչ՝ բլուրի վրա մի ֆանտաստիկ շենք իր ժամանակակից ոճով, իսկական թատրոն այդ Պանևեժիս կոչված գյուղում: Մտանք սպասասրահ, ուր 30-40 միջազգային կարգի ժուռնալիստներ էին սպասում: Ներսում ռեժիսորն է բազմած, ով միանգամից ընդունեց Հայաստանից ժամանած երկու ուսանողներիս, չնայած այդքան սպասողներ ուներ դրսում: Ու ի՞նչ ասաց: Ասում է՝ «Ես այստեղից չեմ սիրում բացակայել, մեկ-մեկ երբ ինձ հետաքրքրում է, թե ինչ է կատարվում Մոսկվայի թատերական աշխարհում, մի շաբաթով կամ 10 օրով գնում եմ»: Եվ ահա այդ գյուղի թատրոնը Մոսկվայի թատերական կյանքում եղանակ էր փոխում: Այդ գյուղը կրթված հանդիսատես ուներ՝ ահա ամբողջ գաղտնիքը:

***– Ես միշտ հավատացել եմ, որ մի լավ մասնագետը մի ամբողջ համակարգ արժե, բայց մենք միշտ էլ այնքան «աչքաբաց» ենք եղել, որ նրան հայտնաբերել ենք հենց բնում ու եթե չենք կարողացել խեղդամահ անել, վերջում ցույց ենք տվել երկրի դուռը: Բայց արդյո՞ք արդար է ամեն բան բարդել միայն հանդիսատեսի վրա, որովհետև մեր պարզ ժողովուրդը տեղով թատրոն է՝ ահագին արտիստիկ, նրա մեջ կա, պահպանված է քաղաքակրթական գենետիկ կազմը. օրինակ՝ Դուք սկսել եք Ձեր կարիերան Կապանից, եղե՞լ է, որ մի ներկայացում տապալվի, հանդիսատեսն արհամարհի, չգա, բարձրանաք բեմ և ժողովուրդը լինի անհաղորդ:***

– Չէ, Կապանում այդպիսի դեպք չեմ հիշում: Բայց տեսեք, մենք խաղացինք Բուլղարիայում, ապա Ռուսաստանում Մոսկվայում «Ավտոբուսը» ներկայացումը, ու ի՞նչն էր հետաքրքիր. հետո, երբ մեզ մոտ խաղացինք, հանդիսատեսն անընդհատ անհարկի ծիծաղում էր առաջին մասում, և երբ երկրորդ մասն սկսվեց, այդ ծիծաղողներն այլևս դահլիճում չէին: Բայց, ամեն դեպքում, ինչո՞ւ դրսի հանդիսատեսը չէր ծիծաղում այդ տեղերում, իսկ ներսինը ծիծաղում է:

***– Կարծում եք՝ տարբեր էթնիկ հանրություններ նույն զգացողություննե՞րը պիտի ունենան որևէ նյութի նկատմամբ:***

– Իմ կարծիքով, բաներ կան, որոնք համամարդկային են և ազգայինի հետ կապ չունեն: Այն, ինչ հուզիչ է՝ հուզիչ է բոլորի համար, եթե հուզիչ չէ՝ ոչ մեկի համար էլ հուզիչ չի լինի:

***– Իմիջիայլոց, ծիծաղն ահագին լուրջ ինդիկատոր է մարդու կամ, թեկուզ, տվյալ հանրության խելքը չափելու համար. ասա՝ ի՞նչն է քեզ համար ծիծաղելի, ասեմ՝ որքա՞ն խելք է մնացել գլխիդ: Էլ չասենք, թե որքան դաժանություն կա թաքնված այդ ցինիզմի մեջ, այդ հռհռոցի տակ: Ես, օրինակ, սարսափում եմ, երբ աչքովս են ընկնում մեր շոուբիզի այսօրվա շուլուխչիները. տեսնես գիտե՞ն նրանք արդյոք, որ ավելի շատ վախ են տարածում, քան ժպիտ ու ծիծաղ: Ես այսօրվա պես հիշում եմ այն մանրապատումները, որ Ձեր կատարմամբ ցուցադրվում էր մեր այն ժամանակվա մինուճար հեռուստատեսությամբ, և դա իսկապես, որ ինտելեկտուալ, խորը ենթատեքստերով հումոր էր: Լավ, բա այս հարցում ինչո՞ւ այսպես խեղճացանք. ոչ մի տարածքում իրար չենք շարունակում՝ եկողը հեծանիվի հայտնության իր կոնցեպտն է պնդում:***

– Դրանից միայն Դուք չեք սարսափում, դա իրոք սարսափելի է և ոչ մի կապ չունի հումորի հետ: Դա էլ թատրոն է և այստեղ էլ պետք է պրոֆեսիոնալ կատարում, մտածված սցենար և ռեժիսուրա: Հայերն իզուր շտապեցին այդքան մեծ թռիչքով նետվել շոու բիզնեսի գիրկը, դրան էլ պետք էր գնալ ավելի կիրթ ու դաստիարակված: Իմիջիայլոց, կոլեգաներիցս մեկն ասում է ոչ թե շոու, այլ «շովու», այսինքն՝ այն ամենաէժան գործողությունը, որն իրեն ընդամենը թույլացնում է: Այդ սարսափելի երևույթը նաև Ռուսաստանում է, երբ մեջտեղ եկան այդ քոմեդիքլաբերը, որոնք ընդամենը խաղում են գրգիռների վրա և դատարկաբանություն են, ուրիշ ոչինչ:

***– Պարոն Քոթանջյան, հիմա էլ հայ կինոն քննենք, եթե չեք առարկի, իհարկե: Ամերիկյան հայտնի սցենարիստներից մեկի մի միտքը վերջերս ինձ ցնցեց, ասել էր՝ «Այն ժողովուրդը, որը XXI դարում իրեն չի ճանաչի գեղարվեստական ֆիլմերում առաջարկված կերպարներում, կարող է անհետանալ»: Ու ես ոչ միայն մեզ չեմ ճանաչում համաշխարհային կինոմատոգրաֆում, այլ հենց մեր նկարած ֆիլմերի մեջ: Մեկ ոսկյա տարեթիվ կա ընդամենը՝ 1969 թվական, երբ նկարվեցին Փարաջանովի «Նռան գույնը» և Արտավազդ Փելեշյանի «Մենք» կինոֆիլմերը: Այս երկու ռեժիսորներին եթե հանենք, մենք այսօր մեր ֆիլմերից ո՞րը կարող ենք դնել մեծ կինոյի սեղանին ու չամաչել դրա համար:***

– Մե՛կ էլ Քյոսայանի «Տղամարդիկ» ֆիլմը, ուրիշ բան չունենք: Գիտե՞ք, մի քանի օր հետո խոստացել են ցույց տալ «Տղամարդիկ» ֆիլմը, որը չի խախտում քաղաքային կինո հասկացության ճիշտ մակարդակը, դրա համար արձանն էլ դրեցին: Ինձ համար այդ ֆիմը շատ թանկ է ոչ թե նրա համար, որ ես ներկա եմ այնտեղ, այլ որ Քյոսը կարողացավ հայկական բնավորությունը արվեստով, ճիշտ խաղարկել:

***– Շնորհակալություն անկեղծության համար. ծանր խոսք ասացիք, անշուշտ, բայց ես էլ եմ այդպես կարծում, որ սովետի անսահման ռեսուրսներով կարելի էր, անշուշտ, ավելի լուրջ գործեր ստեղծել, բայց մենք մեր տաղանդավոր դերասան Սոս Սարգսյանից գերադասեցինք Նահապետ ստանալ՝ անվերջ գցելով ցեղասպանվածի որոգայթները, իսկ Խորեն Աբրահամյանի պես հզոր դերասանին էլ ժամանակ առ ժամանակ երկրից քշելով՝ անապատացրինք նրա իրական կինոտարածությունը: Ես գիտեմ, թե «Տղամարդիկ» ֆիլմի գլխին ինչ օյիններ են դրել, բայց Էդմոն Քյոսայանն այն ռեժիսորն էր, ով գիտեր ինչ սիստեմի հետ գործ ունի և այնպիսի պահեստային դուբլեր էր նկարել, որ կարող էր ամբողջը կրկին վերամոնտաժելով ֆիլմի մեջքն, այնուամենայնիվ, պահել:***

– Ինքը շատ սկզբունքորեն էր մոտենում գործին, ես նրան շատ եմ հարգում: Խիստ պրոֆեսիոնալ էր աշխատում. ասենք, նկարահանումն սկսվելու է ժամը 9-ին, ինքը ժամը 7-ից օպերատորի հետ ամբողջ տարածքը ման էր գալիս, նայում էին, մանրամասն քննարկում էին տեսարանը: Դա չեմ կարող մոռանալ՝ ֆիլմը հանձնելու պահին էր, եկավ հանձնաժողովը, նստեցին, ցույց տվեցինք, ասացին՝ վատ չի, բայց 35-40 նկատողություն կա ու ասացին բոլորը, վերջում էլ, թե «Ե՞րբ կարող ենք հաջորդ դիտումը կազմակերպել», հարցրին, իրենք էլ պատասխանեցին, թե՝ վաղը: Պատկերացնումե՞ք՝ մոտ 40 ուղղում ու վաղն նեթ:

***– Դե, 40 ուղղումն արդեն այլ ֆիլմ է, բայց հիշեցի, որ, ասենք, մեր հրաշալի ֆիլմերից մեկը՝ «Շոր ու Շորշորը», 13 օրում է ստեղծվել:***

– Իմիջիայլոց, «Տղամարդիկ» ֆիլմի հաջորդ դիտումին, իսկապես, այլ ֆիլմ նայեցինք, և ընդամենը մեկ օրում նա կարողացել էր լրիվ նոր ֆիլմ ստեղծել: Բայց սրան էլ ասին՝ 10-15 նկատողություն, և այստեղ էր, որ Քյոսն ասաց, որ ֆինալին հանկարծ ձեռք չտան, ինքը դա չի փոխի ոչ մի դեպքում:

***– Երբ Կուստուրիցան Հայաստանում էր, ես նրան ուղիղ հարցրի, թե աղքատ երկրները կարո՞ղ են կինո ունենալ, լուրջ կինոարտադրություն ծավալել: Կուստուրիցան ասաց՝ «Ո՛չ, ավելի լավ կլինի դուք սևեռվեք վավերագրական կինոյի վրա, որովհետև մեծ կինոն փող է ուզում, համակարգեր, ինդուստրիալ ցանցեր և այլն»... Սա ինձ համար կրկնակի ցավոտ թեմա է, չշարունակեմ: Բա այս դեպքում հայ կինոն գնա մեռնի՞, Դուք ինչպե՞ս եք տեսնում նրա ապագան:***

– Ցավոք սրտի, միակ ճանապարհը, եթե, իհարկե, այս գլոբալիզացիա հասկացությունը հաղթի, այն է, որ մենք դառնանք ընդհանուր կինոշուկայի անդամ:

***– Այսինքն, համատեղ ֆիլմեր նկարե՞նք այդ շուկայի այլ խաղացողների հետ:***

– Այո՛, որովհետև այստեղ առաջին հարցը ոչ թե արտադրությունն է, այլ՝ շուկան: Շուկան է թելադրում օրենքները: Շուկայում իրացվելու համար պետք է շուկային հարմար ֆիլմ նկարահանես, այսինքն՝ այնպիսի ֆիլմ, որ սպառվի, շուկային հետաքրքրի: Լավ, ինչքա՞ն կարող ենք մենք Եղեռնի մասին ֆիլմ նկարել և հույս ունենալ, որ դա կհետաքրքրի մարդկանց: Իհարկե, չի հետաքրքրի:

***– Հրանտ Մաթևոսյանին ասում էին՝ գրի Ցեղասպանության մասին, չէր գրում, մի տող անգամ չգրեց, չխոսեց այդ մասին: Կամ էլ խոսեց այլ ֆորմաների մեջ՝ առանց անուն տալու. զարմանալի մի զուգադիպությամբ էլ Չարենցն, օրինակ, իր «Դանթեականում» անգամ թուրք բառը չի օգտագործել՝ այդքան ջահել անցնելով Ցեղասպանության միջով: Մեծերն արժեքներ են ստեղծում ժամանակի մեջ, նրանք հենց ժամանակն են ստեղծում, թե չէ անգամ ես կարող եմ զբաղվել ժամանակի վավերագրմամբ:***

– Ես խաղացել եմ Հրանտ Մաթևոսյանի փոքրիկ պատմվածքներից մեկում՝ Ծմակուտի մասին ֆիլմում. այնտեղ իմ կերպարն անընդհատ կրկնում էր՝ «Կաթում ա, կաթում ա»... Երկար տեքստ չկար ասելու, հենց դրանով էր ինքը խփում՝ «Կաթում ա, կաթում ա...»... Այս

30

***29➲***

խեղճ մարդը ոչ մի բան էլ չի կարողանում անել, միայն հաստատում է, որ կաթում ա: Բայց դրա մեջ այնքան խորունկ բան կա՝ այ մարդ, էլի նույն է, էլի, մեր գլխին հա կաթում ա, էլի մենք, ներողություն, բայց մի քաք չենք կարողանում ուտենք, միայն խոստովանում ենք, որ կաթում ա:

***– Այ դա կինո է, և ինչո՞ւ ոչ՝ հենց Ցեղասպանության մասին, իսկ Ցեղասպանությունը վաղուց կինո չէ, խաղարկվող, տանող գաղափար չէ. ափսոս, սովետի ահռելի ռեսուրսներ, որ մենք ծախսեցինք մեր այս քաղաքական նպատակի վրա, այնինչ, եթե հզոր գեղարվեստական արժեք ես ստեղծում, մարդիկ ուզում են ճանաչել քեզ էլ, քո պատմությունն էլ: Այդպես ավելի ընկալելի ես դառնում աշխարհին, քան քո զոհի բարդույթներով, տուժածի խիղճով:***

– Իհարկե, այդպես է. արվեստն առարկայի, երևույթի պատկերումը չէ, այլ պատկերացումները դրա մասին: Հրանտ Մաթևոսյանից մեջբերումները, որ երբեմն անում եմ ես, փիլիսոփայական են. գյուղն այստեղ արվեստի տարածությունն է, որտեղից սնվում է այդ փիլիսոփայությունը: Նրա գործերը բնավ էլ գյուղի պատկերում չեն, իհարկե:

***– Իրենից լավ ոչ ոք չի ձևակերպի. ասում է՝ «Ծմակուտը ես եմ»: Մաեստրո ջան, քաղաքային ֆոլկլորն ասում է, որ գիրք եք գրում, ճի՞շտ է:***

– Գիրքն արդեն գրված է: Տարիներ շարունակ զգացել եմ, որ երբ իմ խոսքը գրի են առնում, մի այլանդակ բան է ստացվում՝ չոր, անհասկանալի մի բան: Դրանից ծնվեց այս գրքի գաղափարը: Ինչ ես պատմում եմ՝ ուրիշ է, իսկ ինչ գրում են՝ բոլորովին ուրիշ, դրա համար որոշեցի գրքում ունենալ աուդիո տարբերակը՝ DVD-ով, որտեղ ես պարզապես զրուցում եմ տարբեր հարցերի մասին:

***– Մեզանում, ցավոք, չկա կենսագրի ինստիտուտը. ո՞վ պիտի ամբողջացներ Ձեր ողջ ժառանգությունը, դրա համար էլ Դուք եք լծվել այդ գործին: Բայց ո՞նց եք արել հարցազրույցները, Դուք Ձեզ հարց եք տվել, Դուք էլ պատասխանե՞լ:***

– Այո՛, և բավականին էլ սուր հարցեր եմ ինձ տվել:

***– Մաեստրո, գիտե՞ք ինչ հիշեցի. մի օր լրագրող ընկերուհիս ասաց, այսօր նյութ չունեմ, ոչ էլ ժամանակ, խնդրում եմ ինքդ քեզ հետ հարցազրույց արա, տուր հանձնեմ: Ես էլ կարծեցի, թե դա մի հեշտ բան է ու համաձայնեցի: Հիմա մի քանի ժամ անցել է, ես լռվել եմ մի տեղ ու չեմ կարողանում դուրս գալ, ինքս ինձ այնպես նեղն եմ գցել, դեմ տվել պատին, որ հնարավոր չէ իմ իսկ հարցին մի պատասխան գտնել: Ու ստիպված եղա այդ հարցը ոչնչացնել, որ սևերես չլինեմ: Հիմա Ձեր մոնո հարցազրույցը հա՞րթ էր ընթանում, թե՞ խմի պես դրամատիկ:***

– Ես այնքան դժգոհ էի իմ խոսքի սղագրումներից, որ պատրաստ էի ամեն արգելք էլ հաղթահարել: Այնտեղ, օրինակ, հարցնում եմ, թե ինչո՞ւ այս կամ այն մրցանակին ինձ չարժանացրին և անկեղծորեն էլ պատասխանում դրան: Փափազյանի մասին էլ կա: Ավելի լավ է մարդիկ միացնեն, լսեն, թե ինչ եմ պատմում ես Փափազյանի մասին:

***– Փափազյանն, իհարկե, մեկ առանձին քաղաքակրթություն է, բայց, ահա, դարձյալ, մեր հողից չի ծագել, սերել է ֆրանսիական, իտալական թատերական դպրոցից: Նա հայրենիք եկավ՝ հետը բերելով այդ ահռելի մեծ կուլտուրան: Բայց ինչո՞ւ է այնպես ստացվում, որ տեղում մենք միշտ ավելի տկար ենք:***

– Չստացվի, որ ես ինքս իմ մասին եմ խոսում և ինձ եմ գովում, բայց բանն այն է, որ հենց սկզբից, երբ սկսվեց իմ արվեստի ճանապարհը, մտածում էի՝ «Որտեղի՞ց եկավ այս կուլտուրան», որովհետև իմ շարժուձևը, ոճը «հայկական» չէր ու այսօր էլ, կարծես, «հայկական» չեն: Սրա համար ես դրսի մոտավորապես 100 ֆիլմում նկարվել եմ. երևի Արմեն Ջիգարխանյանից հետո մեր հայ դերասաններից ամենաշատ նկարվածն եմ:

***– Ջիգարխանյանն իր տիպիկ կովկասցու արտաքինով պահանջված էր սովետի կինո-տարածության մեջ: Իհարկե, նրա դերասանական տաղանդն էլ պետք չէ անտեսել, ինչն ինքը հաստատեց իր վարպետությամբ: Բայց հենց միայն նրա սերնդի առնվազն 10-ը Ջիգարխանյան մնաց հայ կինոյի հույսին և դրսի կինոհրապարակ չհասավ: Սակայն Դուք որպես կովկասցի չեք իրացվել դրսում, ա՛յ, սա է, կարծում եմ, Ձեր ֆենոմենը, իսկ դա արդեն մրցակցային ավելի դաժան ու բարդ կռիվ է:***

– Այո՛, այստեղ զարմանալ պետք է. նայեք, ես խաղում եմ ֆրանսիացի և թվում եմ ֆրանսիացի, խաղում եմ իտալացի՝ ես հրաշալի իտալացի եմ, այսինքն՝ ես, հաստատ, տեղական գույն չեմ: Ես կարող եմ ֆրանսիացու համար ընկալվել իտալացի, միևնույն ժամանակ ուրիշ երկրից եկած մարդ, ով իր հետ բերում է ուրիշ կուլտուրա, ուրիշ գույներ:

***– Ամենուր մի գիծ կա Ձեր կերպարում՝ խորամանկ մարդը: Ձեր կարծիքով, ինչո՞ւ են ռեժիսորները հենց Ձեր մեջ նրան գտնում: Բայց Դուք խորամանկ մարդ չեք, կարծես, միևնույն ժամանակ Ստանիսլավսկին մեզ հուշում է, որ «Մարդն ինչ էլ անի, չի կարող հեռանալ իրենից»՝ դերասանին հուշելով խաղով չընկնել և չկորցնել ինքն իրեն:***

– Փիլիսոփայորեն ասած՝ «Человека судят не по его поступкам, а по его отношению к своим поступкам»: Մարդն անգամ կարող է սպանել մեկին, բայց ինչո՞ւ է սպանել, կարող է ինքը արդարացում ունի, և այդ արդարացումը միշտ ավելի կարևոր է, քան արարքը: Իմ կերպարները շատ մարդկային են, որոնց նշանները կարող են նաև բացասական լինել: Այսինքն ինքը կարող է շատ լավ մարդ լինել, բայց արարքներով ահավոր դեմք:

***– Այսօր հատկապես սերիալային դերասանների շրջանում շատ քաղքենական մոտեցում կա. շատերը խորշում են, այսպես կոչված, բացասական դերերից, որովհետև ուզում են ժողովուրդն իրենց նույնացնի իրենց խաղացած բարի, կույս կերպարների հետ: Արդեն անհասկանալի է՝ սրանք ուզում են դերասա՞ն լինել, թե՞, ասենք, ժողովրդի ձայնով դեպուտատ կարգվեն: Բայց վերադառնալով նորից Փափազյանին՝ ինքը ժամանակին օրհորդ է խաղացել. ահա, թե ի՞նչ է թատրոնը և ո՞ւր ենք հասցրել նրան մենք:***

– Ինձ համար մինչև հիմա զարմանալի է: Հիմա անուններ չտամ, բայց ժամանակին, երբ բեմադրվում էր «Մուսա լեռան 40 օրը», այնտեղ մի թուրքի կերպար կար. երբ մի դերասանի առաջարկեցի այդ դերը, նա նեղացավ, թե՝ «Ինձ առաջարկում եք խաղալ թուրքի կերպա՞ր»: Սա արտառոց էր ինձ համար, որովհետև եթե դու կարևորում ես թուրքի կերպարը, պետք է այնպես խաղաս, որ դա արժեք ունենա, այսինքն այն, ինչ ուզում ես, դնես մեջը: «Ռոքսալանա» ֆիլմում ես խաղացել եմ գլխավոր վեզիր Իբրահիմ փաշա, ընդ որում, ռեժիսորն ինձ լրիվ այլ դերում էր պատկերացրել: Բայց երբ կարդացի սցենարը, աչքիս ընկավ մի փոքր կերպար և նրան ասացի. «Ինձ թվում ա ես ավելի լավ գործ ունեմ այնտեղ անելու, Իբրահիմի դերում»: Մեկ էլ ռեժիսորը, թե՝ «Գիտե՞ս, Ռաֆայել, երբ քեզ տվեցի այն դերը, մի քանի միտում ունեի: Նախ, ֆիլմում ծայրից ծայր դու պետք է լինես, երկրորդը՝ պետք է լինես ամենավարձատրվող դերասանը», ասացի՝ «Ինձ հիմա չեն հետաքրքրում այդ հարցերը, ես պետք է խաղամ այս կերպարը»:

***– Դե, լավ արտիստն էլ մի ուրիշ փորձանք է ռեժիսորի գլխին. տաղանդավոր դերասանը սցենարը միշտ խառնում է իրար: Ասում են՝ Փափազյանը մի քանի էջ տեքստը ջնջում էր ու տեղը մի ժեստ, մի հայացք դնում: Բայց Դուք էլ ռեժիսոր եք և լավ գիտեք, թե ինչ է նստում այդ ամենը կուլ տալը, մանավանդ, որ այդ ընթացքում արտիստը գաղափարական մաչո է դառնում ռեժիսորի գլխին:***

– Ամբողջը ես այդպես եմ կառուցել, բոլոր ֆիլմերում, որտեղ ես կամ: Միշտ ես այդ խորամանկությանն եմ դիմում: Ինձ համար կարևոր չէ, որ տակը գրված լինի՝ սա Ռաֆայել Քոթանջյանի մտածածն է, ինձ համար կարևոր է, որ Ռաֆայել Քոթանջյանի արածը լինի պրոֆեսիոնալ: Ես երբեք չեմ ասում, որ դա իմ գաղափարն է, պարզապես ես արտոնությունը դիվանագիտորեն եմ վերցնում, այսինքն՝ ռեժիսոր, ես ձեր գաղափարը հասկացա, և ինքը մտածում է, որ ինքն, իրոք, ասել է դա, և ես ճիշտ եմ ընկալել:

***– Այդ տեխնոլոգիան միշտ հաղթանակե՞լ է, չե՞ք ունեցել պարտված բանակցություններ:***

– Չի եղել պարտություն, որովհետև ընթացքում մոռանում ես գաղափարն ով տվեց, բայց ռեժիսորը համոզված է, որ դա հենց իր տված գաղափարն է:

***– Գիտեք, ահա այսքան ժամանակ է զրուցում ենք, բայց գլխումս մի մեծ պատերազմ է՝ ասե՞լ, թե՞ չասել այն, ինչն ինձ շատ անհանգստացրեց: Որպես լրագրող միգուցե աննորմալ է այս մասին բարձրաձայնելը, բայց որպես մարդ, կին չեմ կարող չհարցնել. շատ նիհարել եք, դալկացած տեսք ունեք, ի՞նչ է պատահել Ձեզ, չլինի՞ վատառողջ եք, կամ մի մեծ դարդ կա, երևի, կներեք...***

– Հա... Իրար ետևից գնացին իմ խաղընկերները: Գնաց նաև իմ ամենամոտ ընկերը, որի հետ մենք 50 տարի ընկերություն ենք արել: Նա Կոնսերվատորիայի պրոֆեսորներից էր, որի սաները միջազգային մրցույթներից վերադառնում էին միշտ հաղթանակած հիմնականում գրավելով առաջին տեղը:

***– Ո՞վ:***

– Ռաֆայել Հակոբյանցը:

***– Հա, ցավակցությունս...***

– Մենք տարեկիցներ էինք: Ինձ համար շատ ծանր էր: Ես կարող էի գնալ նրա ետևից, դա շատ հավանական էր, որովհետև... Ոտքերս ուռեցին, շնչառությունս կտրվեց: Բժշկին էլ ասացի, որ 50 տարի յոգայով եմ զբաղվել և ինձ համար ոչ մի հիվանդություն երբեք պրոբլեմ չի եղել, ես մինչև 60-ը դեղորայք չեմ օգտագործել: Բայց սարսափելի վիճակում էի, այդպիսի բան ինձ հետ չէր եղել:

***– Մաեստրո, բա Հալե՞պը. Սոս Սարգսյանի հայտնի մենախոսությունը հիշեցի՝ Հալե՜պ-Հալե՜պ...***

– Երբ մեր ինքնաթիռն ընկավ Հալեպում, իմ վերևը բացվեց, ես դուրս եկա թևի վրա ու միանգամից 3-4 երեխաների դուրս հանեցի: Հետո ընկերս թռավ ներքև՝ մի 3-4 մետրից, ես երեխաներին բաց էի թողնում, ինքը ներքևից բռնում էր: Հետո երբ հերթական անգամ շրջվեցի երեխաների կողմ, ի՞նչ տեսնեմ՝ մեկն իր ճամպրուկի պատճառով մուտքը խցանել է, ու անցելու տեղ չկա: Ես քիչ եմ հայհոյում, բայց այդ ժամանակ հայհոյանքների տարափ եկավ. երեխեքը ինքնաթիռում, սա իր ճամպրուկն է փրկում: Քաշեցի, մի կերպ

պռկեցի, 2-3 երեխա դուրս եկավ, բայց այդ ժամանակ կապիչները պոկվեցին, ու ես պտտվելով ընկա մի սուր քարի վրա ու կրունկս փշրվեց: Հետո ասացին, որ կրունկս 40 կտորի է բաժանվել, և ինձ անմիջապես տարան հիվանդանոց, թե «21 օր պիտի պառկես ոտքդ վերև»:

***– Իսկ ինքնաթիռում՝ մահվան սարսափն աչքի առաջ, ի՞նչ էիք մտածում, ինչի՞ համար էիք ափսոսում:***

– Մենակ մտածում էի՝ «Կխաղա՞մ էլի, թե՞ ոչ»:

***– Այսինքն, վստահ էիք, որ ողջ ու առողջ եք մնալու և մնում էր խաղա՞լը:***

– Վստահ էի, որ ողջ եմ մնալու: Անգամ երբ այդ արար բժիշկը սարսափեց, թե ոնց եմ պատրաստվում հաջորդ օրն իսկ այդ իմ փշրված ոտքով խաղալ, ես ասացի՝ «Դուք հանգիստ եղեք, մանավանդ որ ես այլ տարբերակ չունեմ»: Ասում էր՝ «Էդպիսի բան չի կարող լինել, դու ամբողջ կյանքում կկաղաս», բայց ես խաղացի իմ «Սերն ու ծիծաղը» հենակով, և հանդիսատեսը միայն հաջորդ օրը գլխի ընկավ, թե ինչն ինչոց է:

***– Ձեզ ամենաշատն ի՞նչն է ցավեցնում ու տխրեցնում:***

– Շատ բաներ կան, որ չեմ հասցնում անել: Ունեմ իմ կուրսը և փորձում եմ այդ կուրսին տանել իմ ուղղությամբ: Ինձնից հետո իմ դերասանական գիծը կարող է անհետանալ, դրա համար եմ փորձում իմ աշխարհն իրենց ներկայացնեմ, որովհետև ափսոսում եմ, որ դա էլ պետք է գնա ինձ հետ: Ես դա, ցավոք սրտի, հասկանում եմ: Ամենագլխավորը՝ գոնե մի կուրս թողնել. միայն թե 21 հոգուց գոնե 7-8-ը կարողանա պահել մտածելակերպը, մոտեցումները. հույս ունեմ, որ այդպես էլ կլինի... Մտածում եմ՝ ինձ մնացել է առնվազն 12 տարվա կյանք, ու դա բժիշկները չեն ասել: Ես մի քիչ էլ աստղագուշակին եմ հավատում, ըստ որի, ես հեռանալու եմ բնականաբար, տեղափոխելով հոգիս մի այլ մարմնի մեջ:

***– Մաեստրո, բայց Դուք ահագին իմաստուն եք աստվածային գործերի քննությամբ տարվելու համար. ախր, դա, կարծես, Նրա որոշելիքն է, Ինքն էլ կասի՝ ե՞րբ:***

– Ինքն արդեն ինձ ասել է:

***– Լռում եմ...վերջ:***

*Զրուցեց Վարդուհի ՍԻՄՈՆՅԱՆԸ*

# Արամայիս Սահակյանը Միեր Մկրտչյանի մասին

**Հարցրեք որևէ մեկին՝ ո՞վ է Միեր Սկրտչյանը, կպատասխանի. «Ֆրունզի՞կը ... Ո՞վ չգիտե Ֆրունզիկ Մկտրչյանին»: Ստացվում է, որ Միեր գրում ենք, Ֆրունզիկ կարդում: «Փշոտ» Միերին հանդիպելու համար Ոգնին մեկնեց Ծաղկաձոր՝ գրողների ստեղծագործական տուն, և ծաղիկների մեջ գրի առավ Միեր Սկրտչյանի «փշոտ» մտքերը:**

***– Ո՞վ է Պաղտասար աղբարը:***

– Ես եմ, ո՞վ է, – պատասխանեց Միեր Մկրտչյանը:

***– Ինչպե՞ս թե Դուք եք, – զարմացավ Ոգնին, Պաղտասարը ծիծաղելի և դյուրահավատ մարդ է, որին խաբում են և բամբասում: Մի՞թե Ձեզ էլ են խաբել ու բամբասել:***

– Շատ: Ընդհանրապես, վատ լուրը հաճույքով են լսում, պատմում և հավատում: Մեր թատրոնի հետ հյուրախաղերի էի արտասահմանում, իսկ Հայաստանում տարածել էին, անգամ «ականատեսներ» էին հայտնվել, թե այդ ընթացքում ավտոմեքենայից տակ մարդ եմ գցել Հայաստանում: Բանը հասավ այնտեղ, որ երբ վերադարձա արտասահմանից, նույնիսկ ինձ հետ եղած դերասան ընկերներս հարցնում էին. «Ճի՞շտ է»: «Բայց չէ՞ որ երկու ամիս միասին ենք եղել», – զարմանում էի ես: «Ի՞նչ կա որ, մարդիկ պատմում են...»: Ստացվում է, որ մեծ մասը լսածին է հավատում, ոչ թե տեսածին:

***– Ընդհանրապես, Դուք ծեզ համե՞ստ եք համարում:***

– Ասելով ասում եմ փոքրոգիներին: Ես իմ արժեքը գիտեմ: Ճանաչում եմ ինձ: Կարևորն այն է, որ մարդն ինքն իրեն ճանաչի, մանավանդ արվեստում: Սիրում եմ համեստ մարդկանց, բայց չեմ սիրում համեստ կարողության տեր դերասաններին: Կա՛մ լավ, կա՛մ բոլորովին, ահա իմ նշանաբանը:

***– Ձեզ ամենուր դեմքով ճանաչում են: Ինչպե՞ս եք զգում այդ ժամանակ:***

– Իմ մասնագիտությունն այնպիսին է, որ ինձ ճանաչում են: Սովորական է դարձել:

***– Ձեզ երբևէ նայո՞ւմ եք հայելու մեջ:***

– Շատ: Բայց ինձ համար ամենագեղեցիկ մարդը նա է, ով գեղեցիկ բովանդակություն ունի:

***– Ուզում եք ասել, որ Դուք գեղեցիկ եք: Պարզ է: Իսկ... կենդանիներ սիրո՞ւմ եք:***

– Երբ նայում եմ կենդանիներին, ամաչում եմ, որ... երկու ոտքով եմ քայլում: Շատ եմ սիրում կենդանիներին: Իրենց նմանների դեմ գոնե զրպարտագիր չեն ուղարկում: Միակ կենդանին, որ չեմ սիրում, կենգուրուն է: Ասում են՝ երբ վագրը հարձակվում է, կենգուրուն լքում է ձագին, որպեսզի ինքը փրկվի...

***– Իսկ կարելի՞ է ատել մի դերասանի, բայց նրա հետ սեր խաղալ բեմում:***

– Եթե տաղանդավոր դերասան է, բեմում մոռանում եմ ատելությունս և նույնիսկ սիրահարվում:

***– Ինչպե՞ս եք զգում ներկայացումից առաջ և հետո:***

– Ներկայացումից առաջ հուզվում եմ, բարկանում, վիրավորվում, առանձնանում, իսկ ներկայացումից հետո մեքենայով երկար շրջում եմ, նույնիսկ ուշացած անցորդներին տուն տանում...

***– Եղե՞լ է, որ դահլիճում զգաք որևէ մեկի սառը հայացքը:***

– Ամեն անգամ մի հոգի լինում է: Ինձ միշտ թվում է՝ նա կամ շատ խելոք է, կամ շատ հիմար: Մեծ մասամբ վերջինն է լինում:

***– Իսկ եղե՞լ է՝ բեմում մոռանաք, որ բեմում եք:***

– Ամեն ներկայացման մեջ մի քանի ուժեղ տեսարաններ կան, երբ ես լրիվ մոռանում եմ, որ ներկայացում է, որ ես դերասան եմ:

***– Ինչպե՞ս եք քնում գիշերները:***

– Վատ: Ընդհանրապես քիչ եմ քնում, այն էլ՝ ինքնաթիռներում և... գրիմի ժամանակ:

***– Ե՞րբ իմացաք, որ Ֆրունզե անունը... ազգանուն է:***

– Հրաչյա Ներսիսյանն ասաց: Առաջին անգամ տեսա թատրոնի բակում: «Ի՞նչ է անունդ», – հարցրեց: Պատասխանեցի Ֆրունզե: Ասաց. «Դա, բիվլայետ»: Հետո կրկին դիմեց ինձ. «Աֆիշը կարդա, տես՝ հոս ի՞նչ պիտի խաղան այսօր»: Նայեցի, նայեցի, մի կերպ կարդացի, հուզված պատասխանեցի «Օթելլոն» է: «Ե՞ս կխաղամ, թե՞ անունը», – ասաց: Ասի՝ դու՛ կխաղաս, Վարպետ: Ասաց. «Դա, բիվլայետ»: Գնաց տասը քայլ, շուռ եկավ. «Լսիր, դու, Կատովսկի»: Ես այդտեղից զգացի, որ իմ անունը ազգանուն է:

***– Վարդան Աճեմյանի կարծիքն ինչպիսի՞ն էր Ձեր մասին:***

– Նա՛ ինձ Երևան հրավիրեց: Աճեմյանն ասում էր՝ երբ Ֆրունզիկին դերը տալիս ես, առաջին հերթին կատվի նման նայում է, որ բերանը չկառի: Հետո սկսում է երկար տնտղել: Միանգամից չի ուտում: Սկսում է կռիվները հեղինակի հետ, հետո կռվում է դերի հետ, դերից հետո կռվում ինքն իր հետ: Կռվում է այնքան, որ հեղինակին էլ սիրի, մյուսին էլ սիրի, իրեն էլ սիրեն...

***– Այնուհանդերձ՝ Ձեր առաջին ուսուցիչն ո՞վ է:***

– Մայրս՝ Սանամը: Անցյալ օրը բացեցի մորս աշխատանքային գրքույկը: «Սանամ» էր գրում ստորագրության փոխարեն, «մ» տառն էլ ծռվա ծ-հոգնա ծ: Գրելիս հոգնել էր մինչև մ-ին հասնելը: Էնտեղ գրված է կրթությունը՝ տարրակա՛ն, միջնակարգ, թե՝ բարձրագույն: Գծված էր «տարրական» տակ: Մի բան, որը պակաս է բոլոր բարձրագույն և միջնակարգ ավարտածներիս մոտ: Մայրս ուներ տարրական կուլտուրա, որ չունենք մենք այսօր:

***– Երևում է՝ շատ եք նեղացած մարդկանցից:***

– Ո՛չ: Ես փնտրում եմ մարդու մեջ բարին, լավը: Երբ մտնում եմ թատրոն, մեկը իմ բարևին կոպիտ է պատասխանում, անմիջապես մտածում եմ. կա-չկա տաքսին է շատ փող վերցրել, կամ տանը վեճ է եղել: Ես չեմ նեղանում մարդուց, ես ուզում եմ թափանցել նրա սրտի արահետները...

***– Եթե ոսկե ձուկ բռնեք, և նա կատարի Ձեր ցանկությունները, ի՞նչ կխնդրեք:***

– Որ վերացնի բամբասանքը, անտարբերությունը, նախանձը:

***– Մի՞թե իսկապես այդքան դժգոհ եք...***

– Ուրիշ քաղաքներում արվեստասերները մոտենում, խելացի հարցեր են տալիս, ինքնագիր են խնդրում, իսկ մեզ մոտ գոռում են. «Ֆրո՛նզ» կամ «Ֆրունզիկ ջան, գնանք խմենք», և կամ «Արտասահմանից ի՞նչ ես բերել...»:

***– Ուրիշ ի՞նչ խնդիր է Ձեզ հուզում:***

– Ամեն մարդ իր տեղում լինի:

***– Մենք էլ ցանկանում ենք, որ Դուք էլ Ձե՛ր տեղում լինեք՝ մայր թատրոնում...***

# «Այն աշխարհները, որոնք Մակեդոնացին կամ Բոնապարտը իրով ու սրով չեն գրավել, ես գրչով եմ գրավում»



**ԼԵՎՈՆ ՋԱՎԱԽՅԱՆԻ «Վերնիսաժ» գիրքը ընթերցողին է հասնելու լրամշակված տարբերակով: Նոր գրքում տեղ է գտնելու ևս հինգ պատմվածք: Մեր զրույցի թեման «Վերնիսաժն» է: Հարցերը քաղված են գրքում տեղ գտած վիպակից, պատմվածքներից, հրապարակախոսական հոդվածներից:**

## «ԵՍ ՏԻՐԱՎՈՐ ԵՄ ՈՒ ԶՈՐԱՎՈՐ»

***– «Հիմա եկել է կաթիլները հավաքելու ժամանակը, որպեսզի մի բաժակ ջրի պես չխմեմ կյանքս»: Թվում է՝ գտել եք երջանկության, կյանքը վայելելու գաղտնիքը, մեկ այլ գործում կարդում ենք. «Բայց ես ո՞նց կարող եմ երջանիկ լինել, եթե շուրջս դժգոհություն է ու թշվառություն: Ես ոսկու շուկայում արծաթ եմ վաճառում, որտեղ շուրջս բոլորն են ոսկի վաճառում: Այստեղ թշվառությունը ոսկեղենիկ է»:***

– Երջանկությունը կյանքն է, կյանքն ապրելը վայելք է, կյանքը մանրամասն ապրելն առավել քան վայելք է: Իսկ ավելի երջանիկ լինելու համար հարկավոր է, որ քո շրջապատն էլ երջանիկ լինի, որ քո խմած ջրի մեջ մի պտղունց աղ կամ դառը դարչին չլցվի, որ հարամ չարվի մի կում ջուրը, որ մարդը խմում է: Մեր ղեկավարները նպատակադրված ալան-թալան են անում, ինչն արտահայտվում է կարմիր գծերով, արագաչափերով, կուտակային ֆոնդերով, շարունակվող սեփականաշնորհումներով: Դու մղկտալով 10 հազար դրամ ես կորցնում Վերնիսաժում, մեկ էլ իմանում ես, որ 47 միլիոն դոլարով հանք են վաճառել: Հանքը վաճառեցին, այսինքն, քո պետականության ոտքի տակի հողը վաճառեցին: Էս պետությունը մերն է, բայց պարզվում է, որ ուրիշինն է, ինչ-որ մեկի գրպանինն է: Այսպես որ զնա, գրպանաչափ հայրենիք ենք ունենալու:

***– «Պոեզիան որբ է ու անտե՞ր»:***

– Եթե ես նման բան եմ ասել, երևի նկատի եմ ունեցել, որ գրողն է որբ ու անտեր: Ամոթ է, որ երկիրը գրողին ու գրականությանը տիրություն չի անում: Բայց առավել վատ է, երբ ընթերցողն է անտարբերության մատնում գրողին: Ես իշխանությունների, գրողների միության կողմից զնահատված չեմ, բայց ընթերցողի կողմից ոչ որբ եմ, ոչ էլ անտեր: Երբ մարդիկ գալիս են Վերնիսաժ՝ իմ գրքերը գնելու, ինձ հետ խոսելու, շփվելու, ես տիրավոր եմ ու զորավոր:

***– «Ազատագրում» ակնարկում ասում եք. «Ես դուրս եմ գալիս գրողների միությունից և դեպի կյանք եմ գնում»: Ի՞նչը փոխեց այդ «ազատագրումը»:***

– Երբ ես գրողների միության անդամ էի, ակնկալիք ունեի, որ իմ գրքերը կտպագրվեն, մրցանակ կստանամ, ալմանախներում կընդգրկվեմ, ծաղկաձորյան հանգստի, վերաբերմունքի ակնկալիք ունեի: Հետո տեսա, որ ակնկալիքներս ի դերն են ելնում, ազատագրվեցի այդ ամեն ինչից: Եթե մի տեղ ես մտնում, առևտրի լեզվով ասած, առքուվաճառք է, պիտի տաս ու ստանաս: Ես գրականություն եմ տալիս, բայց ոչինչ չեմ ստանում, էլ ի՞նչ իմաստ ունի, «կոստյումը (տոմսը) պիտի ինձ զարդարեր»: Ես այդ զարդարանքը տվեցի իրենց ու ազատագրված դուրս եկա այդ շենքից:

***– «Գրողներ կան, որ իսկապես չեն մեռնում: Մտնում են իրենց գրքերի մեջ ու ապրում»: Ավելի շատ գրքերում եք ապրում, քան կյանքո՞ւմ, Վերնիսաժո՞ւմ, շփումների մե՞ջ:***

– Ես ապրում եմ կյանքում, գրականությունն ինձ համար պարապ ժամանակի խաղալիք է, իմ կյանքի հավելվածը: Ես գրում եմ, որ ինձ լավ զգամ, իսկ իմ հիմնական վայելքը մի կում ջրի մեջ է՝ կյանքի մեջ:

***– Պիտի հակադարձեմ Ձեզ, ասում էիք՝ «Ես ապրում եմ պատմվածքից պատմվածք»:***

– Ամեն ճիշտ չէ, որ ճշմարտություն է, ճշմարտության հակառակն էլի ճշմարտություն է: Պատմվածքից պատմվածք ես ապրում եմ, որովհետև շատ նվիրում կա այդ գործերի մեջ: Ապրումը պետք է գրելու համար: Ես գրում եմ, երբ գրում եմ, գրում եմ նաև այն ժամանակ, երբ չեմ գրում:

***– «Որ խեղճությունը կյանքի հետ մտավ, գրչի հետ էլ դուրս է գալու: Խեղճից ի՞նչ գրող»: Մեր գրողները խե՞ղճ են:***

– Խե՞ղճ են: Ես այն գրականության կողմնակիցն եմ, որ Տոլստոյն է գրել: Եթե խեղճ ես, ավելի քան բարի ես, բայց խեղճի բարությունը ուժեղի բարությունը չէ: Եթե մարդ ապրելու փող չունի, հաց ու փող է մուրում, մեծապատիվ մուրացկան է դառնում, նրա գրականությունը պիտի քարդուլյաթավորվի: Բարդույթավորված մարդու գրականությունը ի՞նչ պետք է լինի: Ես Տոլստոյի կողմնակիցն եմ, Գյոթեի, որ իշխան էին, ու նրանց գրականությունն էլ իշխանազուն էր:

***– Ձեր գործերում տեղ են գտել նաև գրչընկերների հետ առկա տարաձայնությունները: Չե՞ք կարծում, որ թղթին տալով՝ մի տեսակ հավերժացնում եք այդ ամենը:***

– Ես գրել եմ ոչ թե նրա համար, որ այդ մարդկանց կամ այդ տարաձայնությունները հավերժացնեմ կամ ոխս հանեմ ու վրեժ լուծեմ, ես այդ մարդկային հարաբերությունների մեջ գեղարվեստ եմ տեսել: Հենց այդ գեղարվեստական ընկալումը, արվեստն եմ որսացել ու հանձնել թղթին:

***– «Ծնողներս կային, հայրս ու մայրս ապրում էին իմ երազում: Միգուցե մենք էլ ապրում ենք Ուրիշի երազում: Միայն թե այդ Ուրիշը չարթնանա»: Դուք ո՞ւմ երազում եք ապրում:***

– Այն ժամանակ, երբ գրել էի, ավելի պատրաստ էի պատասխանելու այդ հարցին, հիմա սառել է հրաբուխը, դժվար է անդրադառնալ: Բայց, կարծում եմ, մենք Աստծո երազում ենք ապրում, թեև իմ Աստվածն այն Աստվածը չէ, որ գրքերի մեջ է, այլ այն Աստվածը, որ գրքերից զատ կա՝ և չինացունն է, և արաբինը, և ֆրանսիացունը, և հայինը: Այսինքն, Աստված կա ոչ այնպես, ինչպես գրքերում է, այլ այնպես, ինչպես ինքը կա: Ես նրա երազում եմ ապրում:

***– Լրացնեմ. «Ես ինչպես հարկն է Աստծուն չեմ հավատացել և ինչպես հարկն է եկեղեցի չեմ այցելել, բայց, ամեն անգամ եկեղեցի հասնելիս, խաչակնքում էի, ինչ խոսք, ավելի շատ իմ, քան Աստծո գոյության համար»: Այնուամենայնիվ, հասկանալի չէ՝ Լևոն Ջավախյանը հավատո՞ւմ է Աստծուն, թե՞ չի հավատում:***

– Լսեք, ես վախկոտ եմ, մարդիկ էլ հիմնականում վախից են հավատում, որ օրը թարս չգնա, կյանքը ճիշտ ընթանա: Այս ամենը պարարտ հող է կրոնի համար, բայց կրոնը ոչ թե Աստծով է ապրում, այլ ավելի շատ իր իշխանությամբ: Ես ընդվզում եմ դրա դեմ ինչ-որ տեղ, բայց նաև վախենում եմ: Որովհետև մարդն այնքան թույլ արարած է այս հսկա տիեզերքում, ո՞վ եմ ես, որ չվախենամ: Իմ գոյության համար դողում եմ ես, այնպես, ինչպես բոլորը: Չկա մարդ, որ այդ ներքին զգացողության առաջ լկտի լինի: Ինչ-որ տեղ վախ կա, այդ վախը հավատ է ծնում, հավատը՝ Աստծուն:

## «ԴԱ ԱՅՆ ՊՏՂՈՒՆՑ ԴԱՌՆՈՒԹՅՈՒՆՆ Է, ՈՐ ԽԱՌՆՎՈՒՄ Է ՔՈ ՄԻ ԲԱԺԱԿ ԸՄՊԵԼԻՔ ՋՐԻ ՄԵՋ»

***– «Գնացեք Նար-Դոս՝ դագաղագործների փողոց, և հարցրեք՝ ի՞նչ է երջանկությունը, և նրանք ձեզ կասեն, թե ինչքան երջանկություն***

33

**ՅԶԸ**

***են տարել»: Կյանքը երջանկություն է: Իսկ ո՞ւր մնաց մահվան, հավերժության թեման, որին այնքան հաճախ են անդրադառնում գրողները:***

– Երկիրն իր առանցքի շուրջը պտտվում է, ինչպես որ մենք՝ կյանքի շուրջը: ՈՒզում եմ մարդիկ ոչ թե հենց այնպես ապրեն, այլ զգան ինչ է երջանկությունը, գուցե այդ դեպքում հանցանքներ ու զանցանքներ չլինեն: Ես ի՜նչ չափով փառաբանում եմ կյանքը, նույն չափով ասում եմ՝ ինչքա՜ն հետաքրքիր է, որ կա մահը: Եթե մահը չլինի, լկտիությունն ինչքա՜ն շատ կլինի, ալան-թալանչիները ավելի ոգևորված կլինեն: Զսպող բան կա մահվան մեջ, մահն է, որ գեղեցկացնում է կյանքը: Մահանալիս մարդն ակամա հիշում է՝ ում է վատություն արել, ում հետ է վիճել, ու մեկ հարց է առաջ գալիս՝ ինչի՞, ախր ինչի՞:

***– Ձեր «Վերնիսաժ» վիպակում այսպիսի երկխոսություն կա.***

**«– Խի դու գրելո՞վ ես ապրում:**

**– Բա որ մեռնեմ, քեզ թվում ա՝ ինչո՞վ եմ ապրելու:**

**– Հիմա դու ապրելո՞ւ մասին ես մտածում, թե՞ մեռնելու»:**

***Հիմա Դուք ապրելո՞ւ մասին եք մտածում, թե՞ մեռնելու:***

– Ես ամեն օր մտածում եմ մահվան մասին, ընդվզում եմ, բայց չեմ վախենում մահից, դա ավելի է կարևորում կյանքը:

***– «Մինչ այդ կարծում էի՝ ապրելու համար ապրելն էլ բավական է; Բայց հիմա պարզվում է, որ ապրելու համար փող է պետք»: Այս բանաձևին համակերպվե՞լ եք:***

– Յուրաքանչյուր մարդ իր կյանքի նշաձողն ինքն է դնում: Անփող կյանքը, այնուամենայնիվ, այն կյանքը չէ, որ մարդն ապրի: Դա այն պտղունց դառնությունն է, որ խառնվում է քո մի բաժակ ըմպելիք ջրի մեջ: Ավելի լավ է, որ չափավոր ապրես, հղփացած չապրես, բայց հնարավորինս կարողանաս հասնել նրան, ինչին կոչված ես: Ես նախարար չեմ, պաշտոնյա չեմ, հացն ու ջուրը վաստակում եմ առօրյա առևտրով, ինչպես Մնձուրին հաց էր վաճառում, կամ ուրիշ գրող հաշվապահությամբ է զբաղվում: Բայց այն պալատները, այն աշխարհները, որոնք Մակեդոնացին կամ Բոնապարտը հրով ու սրով չեն գրավել, ես գրչով գրավում եմ: Եվ ինչ-որ տեղ այս չափավոր կյանքի մեջ ինձ թագավոր եմ զգում:

***– «Պղտոր հործանուտն ինձ ափ հանեց Վերնիսաժում: Բայց երկնքի տակ կյանքն ինձ համար միանգամայն հայտնություն էր: Այնտեղ էին քաղցածները, գործազուրկները, զրկվածները, հոգնածները, բռնավորվածները, նեղյալներն ու լքյալները: Փրկությունը յուրաքանչյուրիս մեջ էր: Հայրենիք ու Աստված մեզ իսպառ մոռացել էին: Փող…փող… փող…»: Պարոն Ջավախյան, հետխորհրդային անցումային տարիներից առայսօր մի՞թե ոչինչ չի փոխվել:***

– Կյանքն էլ է փոխվում, մենք էլ ենք փոխվում, բայց կան բաներ, որ չեն փոխվում. իշխանություններն ապրում են ալան-թալանի համար, ժողովուրդն էլ՝ իր գոյությունը պահպանելու: Եղբորս հարցրի՝ մեր Ալավերդու ժողովուրդը ո՞նց է ապրում, ու նա մի դաժան խոսք ասաց. «Դե, ո՞նց ասեմ, սովին, աղքատությանը հարմարված ժողովուրդ են»: Չէի ուզի, որ մեր ժողովուրդը հարմարվեր իր թշվառությանը: Կուզեի պայթյուն տեսնել, որ բոլոր տեսակի ձորերն ու հորերը հօդս ցնդեին ու ազատ կյանքը վայելելու հնարավորություն ստեղծվեր: Յուրաքանչյուր գրական գործ, որքան էլ հանճարեղ լինի, ինչ-որ շրջանակի մեջ գոյություն ունի: Կյանքն էլ ինչ-որ տեղ օրենքի զսպվածության շրջանակների մեջ պետք է լինի, հասկանում եմ, բայց մեր շրջանակները շատ են ճնշող, նեղող, խեղճացնող: Ուզում եմ պայթյուն լինի, նոր շրջանակ գծվի, որն ավելի կգեղեցկացնի կյանքը, ոչ թե կճնշի այն: Ինձ միշտ հետաքրքրում է՝ այս ի՞նչ աճպարարություն է, այսքան ճնշումից հետո էս ո՞նց են ապրում, մեկ էլ հետաքրքրում է՝ բա էդ վերևները վախ ու սարսափ չունե՞ն, այդքան թալա՞ն կլինի, որ անում են, չե՞ն մտածում՝ ո՞նց է ժողովուրդն ապրում: Պայթյուն կլինի, չէ՞:

## «ԹՇՎԱՌ ՄԱՐԴԸ ՉԻ ԿԱՐՈՂ ԼԻՆԵԼ ԱԶԱՏ ՈՒ ԱՆԿԱԽ»

***– «Ազատ խոսքը քարը քարի վրա չթողեց: Փլատակներից նոր Հայաստան ծնվեց՝ ազատ ու անկախ: Նոր երկրում ես միանգամայն հին էի ու անպիտան»: Տպավորություն է, որ ազատ, անկախ Հայաստանի դեմ է մեր կռիվը: Մի՞թե բոլորիս երազած երկիրը ազատ ու անկախ Հայաստանը չէր:***

– Հայնեն ասում է՝ Գերմանիա, ո՞վ է քո ճշմարիտ որդին, ու ինքն էլ պատասխանում է՝ նա, ով համարձակ թքում է քո դեմքին: Ազատությունը եկավ, անկախությունը եկավ, բայց դրա հետ նաև թշվառությունը եկավ, իսկ դա կապում է մարդու ձեռքն ու ոտքը: Թշվառ մարդը չի կարող լինել ազատ ու անկախ:

***– «Տեսնենք, որ իշխանության գան, էն ժամանակ է՞լ են ասելու, թե ճշմարիտ մտավորականը ընդդիմադիր պիտի լինի»: Դուք ընդդիմադիր չե՞ք:***

– Առողջ վտառները միշտ հոսանքին հակառակ են լողում, այդ առումով դու քո լողը տալիս ես: Ուղղակի մտավորականը չպետք է մականունավորների հացից օգտվի կամ գրողների միության գրոշներից: Նա պիտի ապրի իր կյանքով, իր խոսքը ասի, ու թող ոչ ոք էլ իսկական մտավորականին իր տեղը ցույց չտա: Նրա տեղն իր գրվածքների, իր նկարների, երաժշտության ու քանդակների մեջ է:

***– Ինչպես նշում եք, Նոբելյան մրցանակներն անգամ շատ դեպքերում շնորհվում են քաղաքական դրդապատճառներով: Ի՞նչ կասեք քաղաքականության ու գրականության կապի մասին:***

– Մրցանակը, այո՛, քաղաքականացված է: Տոլստոյը Նոբելյան մրցանակ չստացավ, բայց այնպիսի մարդիկ են ստանում, որ կարդում ես ու զարմանում, թե ինչու ստացան: Ես իմ օրինակով ասեմ՝ լավ գործեր շատ ունեմ, բայց ինչո՞ւ է «Քիրվան» այդքան շահարկվում: Յոթ տարի առաջ եմ գրել, բայց հիմա էլ սրճարաններում վրաս են հարձակվում, թե հայրենադավ գործ ես գրել: Ես դա գրել եմ ոչ թե որ անուն հանեմ, սկանդալ լինի կամ Թումանյանի նման խաղաղություն քարոզեմ, պարզապես ինձ հուզել է այդ թեման, գրականություն եմ տեսել, դրա համար էլ գրել եմ:

***– Դուք նշում եք, որ հին հռոմեական արենայում, կրկեսում, թատրոնում, կինոյում, գրքերում կռիվների, վայրագությունների պատճառը հանդիսություններում չէ, այլ հանդիսատեսի մեջ: Դուք խոսում եք մարդկանց վայրագության ծարավի մասին, իսկ ինքներդ ասում եք, որ անգամ երազում մարդ չեք սպանում: Գուցե բարության ու սիրո ծարա՞վ ունեն մարդիկ:***

– Այդպես գրելով, ես ինձ չեմ առանձնացնում: Մեր գրողներից մեկին հարցրի՝ ինչո՞ւ է քո գործերում այդքան շատ էքստրիմը, ասաց՝ չեմ պատկերացնում մեկին, որ գոնե երազում մարդ չսպանի: Երևի ճիշտ է ասում, բարբարոսական շրջանից եկած բնազդներն ապրում են մարդու մեջ: Մեր նպատակն ի՞նչ է, որ եթե կան մարդկանց մեջ այդ բնազդները, մոռացվեն, բթացվեն, ուղի բացենք, որ մարդն իր մտավոր, հոգևոր աշխարհով մարդ մնա:

## «ԻՄ ՍԵՐՆ ԱՇԽԱՐՀԻ ՉԱՓ Է»

***– «Քո հասցեով սերն է եկել»: Գրողները շատ են խոսում սիրո մասին: Դուք՝ հազվադեպ:***

– Մի առավոտ կինս ասաց՝ Լևոն, դու չես կարող լավ գրող լինել, ուրիշ գրողները սերեր են ունենում, ապրում են դրանով, այրվում են, ինչքան քեզ գիտեմ, նման սերեր չունես, ո՞նց ես առանց սիրո գրականությունդ յոլա տանում: Ու եզրահանգեց, որ չեմ կարող մեծ գրող լինել, որովհետև մեծ սեր չունեմ: Իսկ ես ասում եմ՝ այն սերը, որ իմ մեջ է, դա ամենամեծն է, ես սիրում եմ կյանքը, և իմ սերն աշխարհի չափ է: Սերն է պտուղ տալիս, ատելությունը, չկամությունը, նախանձն անպտղաբեր են: Ես սիրահարված եմ կյանքին, իհարկե, եղել են մեծ սիրո մեջ փոքրիկ էպիզոդներ, դրանք էլ որոշ առկայծումներով իմ պատմվածքներում երևան են եկել:

***– Ճշմարիտ գրականության Ձեր ընկալումը:***

– Ժամանակին ես լուսավորության նախարարության տեսուչ էի, գնացել էի Գավառ՝ ստուգումների, որը, ինչպես միշտ, ավարտվեց քեֆ-ուրախությամբ: Մի տարիքով մարդ պարում էր, և դա շրջադարձային էր ինձ համար՝ արվեստի ընկալման առումով: Մինչ այդ կարծում էի՝ պարը ճկուն շարժում է, վարպետություն, բայց այդ մարդն այնպես էր պարում, որ զգացի՝ պարը լոկ երաժշտության ընկալում է: Նույնը՝ գրականությունը: Շատ գրողներ տարվում են աճպարարությամբ, ծեքծեքում են բառաֆոնդով, իրենց ռեբուսագրությամբ, ոճավորումով: Դա երբեք էլ ճշմարիտ ճանապարհը չէ գրականության: Իսկական գրականությունը կյանքի զգացողությունն է, լեզուն լոկ միջոց է ասելիքը տեղ հասցնելու, իսկ շատերը «երթևեկության միջոցը» դարձնում են «լիմուզին», և ընթերցողը ոչ թե ասելիքն է տեսնում, այլ տյունինգ արած «լիմուզինը»: Կարևորը ասելիքդ բանավոր խոսքի վճիտությանն ու պարզությանը հասցնելն է: Բանավոր խոսքում մարդիկ ճիշտ են արտահայտվում, թղթի առաջ կարկամում են: Ես կուզենայի գրողն իր լեզուն բանավոր խոսքի կենդանությանն ու ճշգրտությանը հասցներ:

***Զրույցը՝ Արմինե ՍԱՐԳՍՅԱՆԻ***

# ОЧЕРЕДНОЙ ВКЛАД «ТАШИРА» В РАЗВИТИЕ КАЛУЖСКОЙ ОБЛАСТИ



15 июня в деревне Лучкино Перемышльского района состоялось торжественное открытие нового животноводческого комплекса на территории ООО СП «Калужское». В церемонии приняли участие президент группы компаний «Ташир» Самвел Карапетян и калужский губернатор Анатолий Артамонов. С открытием комплекса в хозяйстве создано 110 рабочих мест, суммарный объем инвестиций в хозяйство равен 750 млн. рублей.

Соглашение о строительстве комплекса было подписано два года назад между группой компаний «Ташир» и Перемышльской районной администрацией. Новый животноводческий комплекс является действующим. В ноябре прошлого года сюда были завезены 1000 голов скота голштинской породы. Общая площадь комплекса составляет 20 гектаров. Проект предполагает создание технологической цепочки по выращиванию кормовых, зерновых культур и животных, а также первичной обработке молока и проведению селекционных работ по улучшению воспроизводства стада. В хозяйстве применяется прогрессивная технология круглогодичного стойлового боксового содержания коров. Подготовка кормов к скармливанию и их раздача осуществляется с помощью миксеров в виде полноценных сбалансированных смесей.

В ходе встречи глава региона Анатолий Артамонов еще раз выразил благодарность президенту группы компаний «Ташир» Самвелу Карапетяну за поддержку развития региона, выразив надежду, что «Ташир» и в будущем будет реализовывать новые бизнес-проекты на Калужской земле.

Выступая на церемонии, Анатолий Артамонов подчеркнул, что построенный на территории СП «Калужское» животноводческий комплекс уже показал свою результативность благо-даря новым прогрессивным технологиям. Он также отметил значимость активного внедрения в аграрную сферу современных инноваций как для повышения эффективности сельхозпроизводства и качества продукции, так и для процветания сельских территорий.

Зара Аджемян, глава департамента маркетинга и корпоративных коммуникаций группы компаний «Ташир»: «Калужская область много лет подряд является одним из наиболее привлекательных регионов для инвесторов и бизнеса в России, в том числе и поэтому группа компаний «Ташир» давно и успешно поддерживает лучшие инициативы по развитию области в различных секторах экономики. Невозможно переоценить важность развития сельскохозяйственного комплекса: реализация инвестиционных проектов позволяет обеспечить выпуск конкурентоспособной продукции, создание новых рабочих мест, повышение заработной платы работников, а также стабильные налоговые поступления в бюджет. В контакте с администрацией мы не первый год работаем над развитием инфраструктуры Калужской области и будем продолжать наше тесное сотрудничество и в дальнейшем».

**ИНФОРМАЦИОННАЯ СПРАВКА**

ООО «СП «Калужское» образовано в 2004 году на базе ГУП ОПХ «Калужское». В его пользовании находится 2880 га земли, из них 2550 га занято сельскохозяйственными угодьями, площадь пашни – 1932 га. Количество работающих на предприятии – 90 человек.

*WWW.TASHIR.RU*


## «Горцарар»
**Издается с июля 1999 г.**

**Автор проекта и учредитель – Ваграм БЕКЧЯН**

**Зам. гл. редактора - Роза ГУЛЯН**
Գլխ. խմբագրի տեղակալ՝ Ռոզա ՂՈՒԼՅԱՆ

ИЗДАТЕЛЬ
Издательский Дом
**«ШАГАНЭ»**
Лицензия серия ИД № 02313

Журнал зарегистрирован в Министерстве Российской Федерации по делам печати, телерадиовещания и средств массовых коммуникаций
Регистрационный номер ПИ № 77-5015

Авторские материалы не рецензируются и не возвращаются. Переписку с читателями редакция не ведет. Мнение авторов может не совпадать с мнением редакции.
Материалы со знаком Գ публикуются на правах рекламы.
Редакция не несет ответственности за содержание рекламных объявлений.

**ПЕРИОДИЧНОСТЬ ВЫХОДА - ЕЖЕМЕСЯЧНО**

**Отпечатано**
ОАО «Калужская типография стандартов» г. Калуга, ул. Московская 256.
**Формат А3, объём 4,0 п.л.**
**Тираж 1 500 экз. Зак. № 1326.**

Территория распространения: Российская Федерация, страны СНГ, зарубежные страны.

В номере использованы материалы
**«НОЕВ КОВЧЕГ», «АЗГ», «АРАВОТ», «ГА», «ЕТЕР», «hАЙКАКАН ЖАМАНАК», «ИРАВУНК», «ВОЗНИ», «НОВОЕ ВРЕМЯ».**

**Цена свободная.**



**Адрес издательства и редакции:**
**248001, г. Калуга, ул. Суворова, 160.**
**Тел.: (4842) 56-59-29, 59-17-73.**
**E-Mail: gortsarar@list.ru**
**факс (4842) 565-929,**
**www.gortsarar.ru**





**E-Mail: gortsarar@list.ru**